

Հայաստանում գործում են հազար հինգ հարյուրից ավելի հանրակրթական, հերթափոխային, երեկոյան, գիշերօթիկ դպրոցներ, իսկ եթե հաշվենք նաև մարզական, երաժշտական, նկարչական և այլ թեքումներով դպրոցները, ապա այդ թիվը կավելանա ևս երկու հարյուրով:

Այս տարի շահագործման կհանձնվեն հիսուներկու դպրոցական նոր շենքեր՝ մոտ քսանութ հազար աշակերտական տեղով: Հիշյալ դպրոցների շնորհիվ 1339 հանրակրթական դըպրոցներից ինը հարյուրը կանցնեն միահերթ ուսուցման:

1979 թվականին շահագործման կհանձնվի 30 մըսուր-մանկապարտեզ, մոտ վեց հազար տեղով, որն, ինչ խոսք, ամենալավ նվերը կլինի փոքրիկներին՝ մանկան միջազգային տարվա առթիվ:





# ՓՈՔՐԻԿ ՏՂԱ

*ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ*

Ա՜խ, դու փոքրիկ, պայծառ տղա,
Մեծ գլուխով, մեծ բերանով,
Ժպիտդ անուշ դեմքիդ վրա,
Ման ես գալիս Երևանով,
Ճաշակում ես քաղցր մրգեր,
Կարկանդակներ համով-համով,
Հեքիաթային նկարներով
Ու շենքերով հիանալով:

Դու ուզում ես միանգամից
Տերը դառնալ այդ ամենի.—
Քեզ փողոցներն են ողջունում
Եվ քարերը հնամենի,
Առասպելները հինավուրց,
Երազանքները դարավոր.—
Դու նրանց տերն ես հիրավի,
Նրանց իշխանն ես փառավոր:

Այսօր դու տերն ես իսկական,
Վաղը ծառան պիտի դառնաս,
Պիտի պաշտպան կանգնես դրանց,
Իջնես գետին,
Վեր բարձրանաս,
Դառնաս կրակ,
Դառնաս տնակ
Աղետյալին և անօգին,
Պիտի ոգի դառնաս համակ,
Որ չմարի Հայոց ոգին:
Ա՜խ, դու փոքրիկ, պայծառ տղա,
Այս ի՜նչ բուրմունք ես դու բուրում,
Այս ի՜նչ պայծառ լույս կա վրադ,
Որ ես արդեն չեմ համբերում
Եվ անունից ծառաների
Քո այտիկներն եմ համբուրում:





## ԳՐՉԻՍ

Նորից աշխույժ, արագ,
Վազվզում ես անա,
Իմ երգերն ես գրում
Ճերմակ թղթի վրա:

Իմ լավ ընկերն ես դու,
Փոքրի՛կ իմ բարեկամ,
Հասկանում ես հոգուս
Նուրբ թրթիռը անգամ:

*ԼԵՌՆՈՒՇԻ ՎԱՐԴԱՆՅԱՆ*
*Երևանի № 6 միջն. դպր. 6-րդ բ դաս.*

## ՄԱՅՐԻԿԻ ՀԱՑԸ

Հացթուխ է նա՝ իմ մայրիկը,
Ամեն օր հաց է թխում,
Վառարանին մոտիկ կանգնած՝
Մեղմ երգում է ու թխում:
Ողջ երկիրն է հպարտանում
Իմ սիրելի մայրիկով,
Ախր, հացը տաք, բուրավետ,
Մարդկանց համար է բոլոր:

*ԼԵՆԱ ՉԱՅԿՈՎԱ*
*Ուսոլե Սիբիրսկոյե, 3-րդ դաս.*

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԱՇԽԱՐՀԻ ԵՐԵԽԱՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԱՇԽԱՐՀԻ ԵՐԵԽԱՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԱՇԽԱՐՀԻ ԵՐԵԽԱՆԵՐԸ



ՀՈՒՓՍԻՄԵ ԳԱՍՊԱՐՅԱՆ
6 տ., Երևան

# ԻՄ ՏԱՏԻԿԸ

Իմ տատն ապրում է ինձնից շատ հեռու,
Անտառի փեշին, անկաշատ վայրում,
Մի խուլ գյուղակ կա, և իմ սիրելին՝
Իմ հարազատը այնտեղ է ապրում։

Դեմքն ամբողջովին կնճիռների մեջ
Ու բարի աչքեր՝ այդ դեմքի վրա,
Եվ տխուր-տխուր խորշոմներ են, որ
Ցանկապատել են բերանը նրա։

Ութ երեխա է նա դաստիարակել
Ծանր օրերին, երբ պատերազմ կար,
Իմ տատը նույնիսկ ինքն էլ չգիտե,
Թե ինչ է արել մեր երկրի համար։

Գիշեր ու ցերեկ աշխատել դաշտում
Ու շտապել տուն՝ փոքրերին այցի,
Ասել է նրանց տաք, բարի խոսքեր,
Տվել է վերջին պատառը հացի։
Ափսո՜ս, հեռու է այդ լավ տատիկն իմ...

ՆԱՏԱՇԱ.
Ղազախստան, 8-րդ դաս.

# ԻՆՁԻ ՄԱՍԻՆ ԷԻՆ ՆՐԱՆՔ ԵՐԱԶՈՒՄ

Ես երկնքին եմ նայում՝ բաց-կապույտ,
Հողին եմ նայում՝ անտառների ծով,
Նայում եմ դաշտին, լճակին, սարին,
Ես աշխարհին եմ նայում նոր աչքով։
Ես տեսնում եմ այն, ինչ երազել են
Հոգսի մեջ կորած տատիկները մեր.
Երջանկություն են նրանք երազել
Եվ երազել են դաշտի մեջ տեսնել,
Թե ինչ խաղաղ է հացն հասունանում,
Եվ ծիծաղում են մանուկներն անհոգ։
Տեսնել՝ ինչ լա՜վ է ապրելն աշխարհում,
Երբ չի տառապում աշխարհում ոչ ոք։

ՏԱՆՅԱ ԴՈՒԴԻԼ
Նիկարագուա, 7-րդ դաս.

Թարգմանությունները՝ Մ. ՄՈՒԿԱՆՅԱՆԻ



Պալատի նախագծի հեղինակներ՝ ճարտարապետներ Հ. ՊՈՂՈՍՅԱՆ, Ա. ԹԱՐԽԱՆՅԱՆ, Ս. ԽԱՉԻԿՅԱՆ

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՊԱԼԱՏԸ



Երևանում շահագործման հանձնվեց ևս մի հրաշալի կոթող՝ երիտասարդության պալատը:

Ինչպիսի՞ բավականություն է բարձրանալ պալատի ամենավերին հարկում կառուցված դիտահարթակը կամ նստել սրճարանում և նայել քաղաքին: Շրջանաձև սրճարանը անշտապ պըտտվում է, ու հայացքի առջև փոխվում են լայնահուն պողոտաները, տեղ-տեղ



Պսակադրության սրահը



Ճեմասրահի ընդհանուր տեսքը

բարդիների նման վերընձյուղված երկնաքերներով, լճակներով, ջրավազաններով, որոնք տուֆին ու վառ կանաչին են ձուլել իրենց երկնագույնը և ստեղծել անկրկնելի ներդաշնակ, գմայլելի պատկեր: Քաղաքի կենտրոնի հետ միասին քո հայացքի առջևով անցնում են հին ու նոր թաղամասեր, քաղաքամերձ բնակավայրեր. Նոր-Արեշ, Խարբերդ, Կիլիկիա, Մալաթիա, Արաբկիր, Զեյթուն...

Հինգ հարյուր տեղանոց հյուրանոցը սկսվում է հինգերորդ հարկից, նրանից վար պսակադրության սրահն է, ռեստորանները, համերգային, կինո և այլ դահլիճները, կառուցված մեր ազգային ճարտարապետության լավագույն ավանդույթներով:





— Տարիներ առաջ էր դա,— հիշում է պալատի դիրեկտոր ընկեր Ս. Մուրադովը,— պալատի կառուցման համար տեղ էինք փնտրում: Տարբեր տեղեր առաջարկվեցին: Ճարտարապետներ Արթուր Թարխանյանի, Հրաչիկ Պողոսյանի, Սպարտակ Խաչիկյանի հետ ընտրեցինք այս բլուրը և չսխալվեցինք: Մոսկվայում պալատի

մակետի քննարկմանը մասնակցում էին շատ անվանի ճարտարապետներ: Բոլորը հիացած էին նախագծի ինքնատիպությամբ և մանավանդ ա՛յն տեղով, ուր կանգնելու էր պալատը: Լատվիայի երիտասարդական պալատի ճարտարապետներից մեկը, որը ներկա էր այդ քննարկմանը, ասաց. «Թո՛ղ ճարյուր մետր բարձրություն չլինեի, հիսուն չլինեի, թեկուզ տասմետրանոց մի բա՛րձրավանդակ լիներ, որ մեր պալատն էլ կանգներ աչքի ընկնող տեղում»:

— Իսկ մեր ամսագրի ընթերցողների համար պալատում ի՞նչ է նախատեսված,— հարցրինք դիրեկտորին:

— Ճշմարիտն ասած, ամեն ինչն էլ այսօրվա դպրոցականների համար է արվում: Չէ՞ որ մեր վաղվա երիտասարդներն են նրանք: Բայց անկախ դրանից, բարձր դասարանցիները կարող են օգտվել լողավազանից, կինո և համերգային դահլիճներից, իհարկե, դպրոցականների համար պալատում նաև հատուկ բաժանմունք կառանձնացվի:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

# ՌԻԿԿԻ

*ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ*



Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

# ՃԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

## ՌԻԿԿԻԻ ՆՈՐ ՏԵՐԸ

Երբ Տիգրանը փոքր էր ու երբ նրան հարցնում էին, թե աշխարհում ամենից շատ ի՞նչ ես սիրում, ասում էր. «Շատ բան եմ սիրում, բայց շուն էլ եմ սիրում, ա՛յ, այսքան», և նա երկու ձեռքերն իրարից հեռացնում էր մի փոքրիկ ձագուկի չափ։ Եվ այդ ժամանակ նա ժպտում էր ու աչքերը կկոցում, կարծես նրա դեմքին արևի խտղտացնող ճառագայթ ընկած լինեն։

Ափսո՜ս, երկար ժամանակ այդ տղային չէր հաջողվում մի լավ շուն ճարել։ Բայց ճշմարտությունն այն էր, որ այդ տղայի մայրը շներին հանդեպ այնքան էլ բարյացակամ չէր։ Ինչքան անգամ, որ տղան խոսք էր բացում շուն պահելու մասին, այնքան անգամ մայրը ասում էր. «Շան հաչոցն իմ ջղերի վրա ազդում է»։ Սակայն, ամենածանրակշիռ առարկությունն այդ չէր։ «Շունը բակի համար է, այգու և անտառի համար, և ո՛չ տան։ Հենց որ շունը տուն մտավ, չորս կողմը մազով կլցվի, իսկ դա շատ վնաս է երեխաների համար»։ Տղան ասում էր. «Չէ՜, ա՛յ մամ, իսկ ուրիշնե՜րը»։ Իսկ մայրը վրա էր բերում. «Ի՞նչ չէ, հանկարծ կարող է շան մազը շնչափողն ընկնել, իսկ ուրիշների հետ ես գործ չունեմ»։ «Չէ՛ մի, շնչափո՜ղը,— հակառակում էր տղան,— շնչափո՜ղը, շնչափո՜ղը»։

Բայց՝ ճար չկար, երբ Տիգրանը փոքր էր, մոր խոսքն անառարկելի ու խիստ էր թվում. «չի՛ կարելի», այս երկու բառի դեմ տղան անօգնական էր ու դրա համար էլ լաց էր լինում։ Ու նրա սրտում ավելի էր բորբոքվում մի շատ լավ, փափուկ մազերով, ետևի ոտքերի վրա կանգնող ու օդում շաքար որսացող շնիկ ունենալու ցանկությունը։

Մինչև Ռիկկիին ճարելը, Տիգրանը, համենայն դեպս, մի շուն ունեցավ։ Այդ միջանկյալ պատմությունը շրջանցել հնարավոր չէ, քանի որ փոքրիկ տղայի կյանքում դա շատ նշանավոր օր էր։ Երբեմն երեխաներից մեկնումեկի համար այդքան նշանավոր է լինում Նոր տարվա տոնակատարության ավարտը, երբ տարեմուտի գաթայի իրենց բաժնի միջից դուրս է գալիս բախտի նշանը։

Մի օր, որ նույնքան անմոռանալի էր լինելու Տիգրանի կյանքում, մայրը աշխատանքից վերադառնալիս, դռան բակում շան վնգստոց լսեց։ Ձայնը վերևից էր գալիս, բայց թե ո՞ւմ տնից, դեռ պարզ չէր։ Չորրորդ հարկի պատշգամբից Ռշտունի տատիկը ջղայնացած ասում էր.

— Սպասի՛ր, թող աշխատանքից տուն գան, նո՞ր կխոսեմ քեզ հետ։ Առավոտից գլուխներս տարար։

Այդ մեծ շենքի բոլոր երեխաները նրան ասում էին Ռշտունի տատիկ, որովհետև դռան ոսկեզօծ սալիկի վրա գրված էր Ռշտունի ազգանունը։

Մայրն արագացրեց քայլերը, շուտ համոզվելու, որ շան վնգստոցն իրենց պատշգամբից չի լսվում։ Եվ երբ զանգը տվեց, շատ անհամբեր էր։ Ու դրա համար իրար ետևից մի քանի անգամ սեղմեց կոճակը։ Այդ ժամանակ էլ հենց նա նկատեց, որ իրենց դռան առաջ գցված քաթանե փռոցը չկա։ «Սա վատ նշան է»,— անցավ նրա մտքով։ Դուռը բացեց հարևանի տղան ու անմիջապես վազեց ետ՝ դեպի պատշգամբ։ Մայրը ծանր պայուսակը ձեռքին շտապեց նրա ետևից։ Եվ ի՞նչ եք կարծում, ի՞նչ տեսավ։

Վեց-յոթ երեխա իրար գլխի հավաքված ինչ-որ բան էին զննում։ Նրանք այնքան խիտ էին շարվել, որ մանկական գլուխներից մի գեղեցիկ, կլոր պսակ էր գոյացել։ Մայրը կռացավ ու այդ անսովոր, գեղեցիկ շրջանակից ցած նայեց։ Եվ նոր միայն տեսավ, որ հափշտակության առարկան թեև երեխաների համար շա՜տ երևելի, բայց իր համար գլխացավանք մի բան է։

Մթերային խանութի դռանը կիտված ծիրանի արկղերից մեկը հայտնվել էր իրենց պատշգամբում։ Արկղի մեջ իրենց փռոցն էր, վրան՝ սև դնչիկով, մոխրագույն մազերով, ցեխակոլոլ, փոքրիկ, գնդլիկ մի շնիկ։ Շան լակոտը դողդողում էր ու վնգստում։ Երեխաները հացի մի մեծ կտոր ու մի շերտ պանիր էին դրել նրա դնչի դիմաց ու, իրար հերթ չտալով, խնդրում էին.

— Կե՛ր, կե՛ր, շատ քաղցած ես, դե կե՜ր, էլի...

Շնիկն այնքան փոքր էր, որ նույնիսկ պանրից չէր կարող մի կտոր պոկել, ուր մնաց հացից։ Իսկ երեխաները չէին հասկանում և ասում էին.

— Դողում է, երևի մրսում է, դրանից էլ ախորժակ չունի։

Այդ ժամանակ դիմացի պատշգամբից Ռըշտունի տատիկը ձայն տվեց.

— Առավոտից գլուխներս տարան, մեղք չի՞ այդ անասունին տանջում են։

— Հեռացե՛ք արկղից,— ասաց մայրը։— Դուք կսատկացնեք այդ շանը։ Նա պետք է կաթ ուտի, իսկ դուք հաց եք դեմ արել։

— Ինչ ուզում ես ասա, պահելո՛ւ եմ, պահելո՛ւ եմ, պահելո՛ւ եմ,— լացակումած գոռաց Տիգրանը։— Չես տեսնո՞ւմ ինչքան սիրուն է։

Եվ այդ ժամանակ երեխաները կարծես խոսքները մեկ արած, հաստատեցին.

— Վանինե՛ մորաքույր, շատ սիրուն է, չէ՞։ Սև դնչիկը, պոչը, պո՜չը։ Տե՜ս, պոչը շարժվում է։

Մոր սրտում կարծես մի բան կծկվեց: Հանկարծակի անելանելի վիճակի մեջ ընկած մարդու նման նա ուսերը վեր քաշեց ու շրջվեց Ռշտունի տատիկի կողմը. նրան ձեռքով նշան արեց. իբր. սպասիր. տեսնենք սրանից ոնց ենք գլուխ հանելու: Ռշտունի տատիկն էլ իր հերթին գլուխը տմբտմբացրեց. իբր՝ հասկանում եմ. հասկանում եմ, դժվար կացություն է:

Մինչև ուշ երեկո երեխաները չհեռացան ծիրանի արկղից: Շան լակոտը վնգստում էր ու դողում: Ափսեով կաթին էլ չմոտեցավ: Մայրը գլուխն օրորելով ներսուդուրս էր անում ու երբ լսում էր դռան զանգը, համոզված էր, որ հարևաններից մեկնումեկն է: Որն արդեն մթնում էր, և նրանք գալիս էին տանելու իրենց երեխաներին: Իրար ետևից բոլորին տարան: Մնաց Տիգրանը՝ արկղի կողքին պպզած:

— Սա էլ իմ շան բույնն է. սա էլ իմ շան վերմակն է.— խոսում էր ինքնիրեն և բարակ փայտը հա քաշում էր շան մեջքին: Իսկ շընիկը դողդողալով դուրս էր սողոսկում փայտի տակից:— Որ տաքանաս՝ կքնես, չէ՞.— հարցնում էր Տիգրանը:

Բայց շունը վնգստում էր ու դողում: Այդպես մի քիչ էլ ժամանակ անցավ: Տղան հոգնածությունից թուլացել էր ու քունն էլ սոսկալի տանում էր: Մայրը նրան տարավ լվացվելու:

— Երե՞ք անգամ ձեռքերդ օճառիր,— խիստ ասաց նա:

— Ինչո՞ւ, մեկ անգամը քիչ է՞ ո՞ր:

— Քիչ է,— ասաց մայրը:— Հանկարծ կարող ես շնից էխինոկոկով վարակվել:

— Չէ՞ մի, էխինոկոկո՞վ,— երկարացրեց Տիգրանը:

Եվ երբ նա գնում էր դեպի իր մահճակալը, լսեց մոր ձայնը.

— Շան լակոտը լաց է լինում, իր մորն է ուզում:

Տիգրանը սկզբում չլսելու տվեց: Բայց հետո ննջարանից ետ եկավ ու մեծավարի ասաց.

— Որ ես փոքր էի, լաց չէի լինո՞ւմ: Դու և հայրիկն ինձ բարուրով չէի՞ք դնում սփոռցի մեջ ու ծայրերից բռնած օրորում, այնքա՞ն...

— Ինչքա՞ն,— հարցրեց մայրը:

— Մի երեք ժամ, մինչև ես հարբեի ու քնեի: Մոռացե՞լ ես:

Մայրը չէր մոռացել, բայց զարմացավ, որ որդին էլ չի մոռացել. ուրեմն ինչքան էին խոսել այդ մասին:

Այդ գիշեր Տիգրանը և նրանց շքամուտքի երեխաները շատ հանգիստ քնեցին, բայց ինչ վերաբերում է մեծահասակներին... Պարզ չէ՞, որ այդ մեծահասակներն ամեն ինչ բարդացնում ու վեճի առարկա են դարձնում: Առավոտյան, երբ բոլորը ոտքի վրա էին, պատշգամբներից հարևանները մտքեր էին փոխանակում. «Ամբողջ գիշեր չքնեցի. սիրտս ճմլվում էր»: «Պետք է տնային կառավարիչին հայտնել, եթե ոչ այդ երեխաները մարդու ինֆարկտի կհասցնեն»: Իսկ մեկն էլ, իբր, շանն է խղճում. «Մի՞թե կարելի է կենդանու հետ այդքան անողոք վարվել»: Իսկ այդ ժամանակ սև դնչիկով շնիկը շարունակում էր վնգստալ, բայց շրջապատի աղմուկն այնքան շատ էր, որ նրա ձայնը չէր լսվում: Եվ Տիգրանն էլ, երբ արթնացավ ու մորից իմացավ, որ շնիկն ամբողջ գիշեր լաց է եղել, որովհետև իր մորն է ուզում կաթնակեր այդ խեղճ անասունը, քանի որ միայն ծիծ կարող է ուտել և մոր փորի տակ տաքանալով մեծանալ: Եվ եթե մի երկու ժամ էլ չվերադարձնեն իր մորը, շնիկը կսատկի:

Այս պատմությունը հարևանները վաղուց մոռացել են: Եվ միայն Տիգրանն ու նրա մայրը չեն մոռացել:

Մաքրություն ու լռություն սիրող, կարգ ու կանոն պահպանող Ռշտունի տատիկը վախճանվել է: Հենց նա էր, որ ամենից շատ էր վախենում՝ շնից մի վարակ կանցնի այդ չարաճճիներին: Ընդհանրապես այդ շենքում շատ-շատ բան է փոխվել, քիչ առիթներ չեն եղել լաց լինելու, և, փա՜ռք աստծո, շատ առիթներով ծիծաղել են ու հրճվել: Եվ ծիրանի արկղի շուրջը խմբված մանչուկներից ամեն մեկը մի բարձրահասակ, խելացի երիտասարդ է դարձել: Մի քանիսը նույնիսկ զինվորական ծառայության են մեկնել: Եվ հիմա, նրանցից մեկը՝ Տիգրանը, նորից երկու ոտը մի կոշիկի մեջ է դրել, թե՝ շուն եմ առնելու, որ շուն եմ առնելու: Հենց այս աշխատավարձիս անպայման առնելու եմ:

— Ո՞վ է ծախում, որ առնես,— հարցնում է մայրը:

— Ծախում են,— ասում է որդին:— Ցեղական շուն է, որի նախատատը իսպանական թագուհու շան ցեղից է սերել:

Մայրը չգիտե ծիծաղի՞, թե՞ լաց լինի: Հիմա առարկելը մի քիչ դժվար է: Ընչափողի և «Էխինոկոկի» պատմությունը մեջտեղ բերելը հարմար չէ: Ոչ էլ շան հաչոցը կարող է հարևաններին սրտի նոպայի հասցնել, քանի որ՝ Տիգրանի ասելով, իսպանական թագուհու շան ցեղից սերված այդ Ռիկկի կոչեցյալը, սենյակում բոլորովին չի հաչում: Եվ, վերջապես, կյանքում Տիգրանը մի շուն ունենալո՞ւ է, թե՞ ոչ: Հաջորդ առավոտ աշխատանքի գնալուց առաջ, որդին հայտարարեց.

— Այսօր Ռիկկիին բերում եմ:

# ՇԱՆ ԳՆՈՒՄԸ

Ամբողջ ցերեկը Տիգրանի մայրն անհանգիստ էր: «Հին պատմությունը կրկնվելու է»,— մտածում էր նա: Պահարանը մաքրելու ժամանակ նա հայելու մեջ տեսավ, որ համարյա սև մազ չի մնացել: Երկար նայում էր ինքն իրեն, կնճռոտել էր ու նիհարել: «Ծերացել եմ, բայց էլի դժվարանում եմ սեփական երեխայիս հետ լեզու գտնել»,— հայելում երևացող իր պատկերին ասաց նա: «Սխալվեցի, երբ Տիգրանը փոքր էր, պետք է մի միջոց գտնեի»: Վանինե մայրիկը շատ էր ափսոսում, որ իր տղային զրկել է այդ բավականությունից: Չէ՞ որ հին

տանը հնարավորություն կար։ Բակում կարելի էր շան համար բույն սարքել։ Մի քիչ այն կողմ անպտուղ ծառեր կային, որոնք համարյա չէին խնամվում և մացառուտի էին վերածվել։ Շունը կարող էր այնտեղ ստվերում պառկել, բայց հիմա՞, հինգերորդ հարկի իրենց բնակարանո՞ւմ։ «Այս ջահելները խելքները թռցրել են»,— վերջնականապես որոշեց Նա։ Ուրեմն ի՞նչ, նրա որդու մեջ չէր մարել մի լավ, չարաճճի, օդում շաքար որսացող շուն ունենալու վաղեմի ցանկությո՞ւնը։ Այո, այդպես։ Դժբախտությունն այն էր, որ մայրը ոչ մի կերպ չէր կարողանում որդուն համոզել, թե՝ մանրահատակի վրա, չորս պատերի մեջ բանտարկված խեղճ կենդանին տանջվելու է։ Իսկ այսօր՝ բերում եմ, որ բերում եմ, անունն էլ՝ Ռիկկի։ «Եթե փոքր ժամանակ ունենար այդ շունը, անպայման Լիկկի կասեր։ Ախր Տիգրանը «Ր» տառը շատ ուշ կարողացավ արտասանել»,— հայելու մեջ երևացող իր հոգնած պատկերին ժպտաց մայրը։ «Թե որ ասում է այդ շունը չի հաչում, գուցե և հարևաններին չխանգարի։ Խելքս բան չի կտրում։ Տեսնենք, տեսնենք ինչ է լինելու»,— անհանգիստ մտքերն հեռացրեց իրենից ու գնաց խոհանոց։

Խոհանոցում մոր տրամադրությունն ավելի փչացավ։ Գալու է ամեն բան հոտոտի, լիզի, աման-չաման չի հարցնելու, ի՞նչ է հասկանում։ Աստված չանի, եթե հանկարծ բերի էլ, շունը պետք է խոհանոց չմտնի, ինչպես ուզում է թող դաստիարակի. ո՛չ խոհանոց, ո՛չ ճաշասենյակ, ո՛չ էլ իր՝ մոր ննջարանը։ «Հենց որ տուն մտավ, այդպես էլ կասեմ»։ Մայրն իրեն հանգստացնում էր նաև նրանով, որ եթե տղան շուն գնի, հենց ինքը, տղան էլ խնամելու է. թող լողացնի, կերակրի, ինչպես ուզում է։ Այս խնդրում մայրն ուներ իր համոզիչ ու շատ ծանրակշիռ պատճառաբանությունը։ Մայրը շնից վախենում էր։ Եվ դա հին պատմություն էր, որի մասին գիտեր նաև Տիգրանը։ Չէ՞ որ մայրերը, երբ իմացած բոլոր հեքիաթները պատմում վերջացնում են, զավակներին սկսում են պատմել իրենց մանկության իրական դեպքերը։ Եվ նույնիսկ պատմում են այն սքանչելի օրերի մասին, երբ իրենք երիտասարդ էին և սիրահարված։

Հա, շնից վախենալու պատմությունը. այն ժամանակ ինքը կլիներ ութ տարեկան։ Փողոցում բոլորը դարպասով բակեր ունեին։ Մի անգամ Զկեենց դռնով անցնելիս նրանց գելխեղդ շունը հարձակվեց ու զգեստի փեշից մի կտոր պոկեց։ Լեղապատառ, ձայնը գլուխը գցած վազեց տուն, ու մայրը տեսնելով երեխայի սարսափահար դեմքը, գնաց Զկեենց վրա կռիվ. «Գելխեղդ շուն եք պահում, վզին շղթա՛ դրեք, ոչ թե բաց թողեք այս մի մատ երեխեքի վրա»։ Հարևանը թե՝ «Քույրի՛կ ջան, հազար ներողություն, բայց մեր շունը գելխեղդ չէ, մեր դռան պահապանն է, վզին էլ՝ շղթա, արի՛ քո աչքով տես։ Քո աղջկան ո՞վ էր ասում մտնի շան քիթը, որ շունն էլ փեշը լիզի»։ Այդ շան պատճառով երկու հարևաններ խռովեցին, իսկ Վանինեի մեջ էլ խորը հետք մնաց՝ վախը շների հանդեպ։



Ու հիմա... Նա պատուհանից դուրս նայեց։ Մայթով գալիս էր իր աշխատավոր տղան՝ շան պարանը բռնած։ Շունը ձգվում էր դեպի կանաչ գազոնը, իսկ Տիգրանը քաշում էր պարանը, որպեսզի գառան չափ շունը ուղիղ իր ճամփով գնա և հենց սկզբից կարգուկանոնի վարժվի։ Մայրը ինչ անելը չգիտեր։ Նա սառել կանգնել էր ու անթարթ աչքերով դուրս էր նայում, աչքի տեսածին չէր հավատում։

Բայց դե՝ եղածը եղած էր։

# ՏԽՈՒՐ ԻՐՈՂՈՒԹՅՈՒՆ

Երբ Տիգրանը զանգը տվեց, մայրն արդեն դռան ետևում էր։ Նա սպասեց, որ մի երկու անգամ էլ զանգը հնչեր, ապա դանդաղ քաշեց սողնակը։ Տղան կանգնած էր մեղավորի՞, թե՞ հաղթողի հայացքով։ Շան կաշեփոկը փաթաթել էր ձեռքին ու շունը՝ սպիտակ-շագանակագույն խալերով, հարցական մորն էր նայում։ Մայրը մի կողմ քաշվեց. շունը վարանոտ, բայց թեթևաքայլ ներս մտավ ու միջանցքում պտույտներ գործելով՝ հոտոտեց հատակը։

— Բերեցի,— ասաց Տիգրանը,— անունը Ռիկկի է,— և քաշելով կաշեփոկը,— Ռիկկի՛, Ռիկկի՛, արի՛, սա է քո տեղը։

Շունը հնազանդ գնաց դեպի պատշգամբ։ Իսկ մայրը շտապեց խոհանոց ու դեպի պատշգամբ տանող դռան դիմաց երկու թիզ

բարձրության մի տախտակ դրեց: «Կարծես վրայից չի թռչելու»: Նա Տիգրանին զգուշացրեց.

— Տես, որ սրա վրայից չանցնի:

— Ռիկկի՛, խոհանոց չմտնե՛լ, տախտակի վրայից չթռչե՛լ,— այդ ասելիս նա մատով ցույց էր տալիս տախտակը,— քո տեղը պատշգամբն է ու իմ սենյակը, վե՛րջ,— հրամայեց նա:

Ռիկկին հնազանդ պառկեց պատշգամբի սալահատակին ու պոչը թփթփացրեց: Տիգրանի մայրը շեղակի նայում էր:

— Ինչ աննորմ մռութ ունի:

— Ցեղական շուն է. ֆոքս-տեր-յեր. լսե՞լ ես,— հարցրեց Տիգրանը:

— Այդքան երկար ու աներևակայ դո՞ւնչ,— նու-նու գնալով հարցրեց մայրը:

— Դա էլ հենց ցեղականության նշանն է,— պարծենկոտ շեշտով բացատրեց որդին:

Քիչ հետո, երբ մայրը խոհանոցում ճաշի պատրաստություն էր տեսնում, Տիգրանը հանեց հանրագիտարանը և գտավ այն էջը, որտեղ մի տասը-տասնհինգ իրարից տարբեր շների նկարներ կային:

— Սա՛ էլ քեզ ֆոքստերյեր,— կանչեց նա,— արի տե՛ս:

Մայրը խոհանոցից եկավ: Որդին հմայվածի նման նայում էր հանրագիտարանի գունավոր նկարներից մեկին, որը, իբր հենց իր գնած շան ցեղից էր: Մայրը ուշադիր զննեց: Նկարում շունը դերասանավարի, զգաստ կանգնել էր, գլուխը ցուցադրաբար բարձր պահած, և դունչն էլ, իրոք, երկար էր ու փրչոտ, ինչպես Ռիկկինը:

— Քո կարծիքով սա [illegible]նղեցի՞կ է,— խռովածի ձայնով հարցրեց մայրը: Հետո որոշեց չըփչացնել տղայի տրամադրությունը.— Պատմիր տեսնենք ումի՞ց ես գնել:

— Ասեմ: Տերը մեզ մոտ է աշխատում: Պետք է տեսնեիր, թե ինչքա՞ն տխրեց, երբ Ռիկկիին տվեց ինձ:

— Որ այդքան սիրում էր, ինչո՞ւ վաճառեց:

— Պապի պատճառով: Պապը շատ ծեր է և օր չէր լինում, որ կռիվ չսարքեր՝ «դե բավական է թունավորեք կյանքս, բավական է», թոռըն էլ ստիպված, չուզելով վաճառեց: Մի տարի պահել էր, կարծում ես հե՞շտ էր:

— Իսկ նրանից առաջ շունը ո՞ւմ մոտ էր:

— Մի կնոջ, որը գնել էր Ռիկկիին, երբ վեց ամսական էր եղել:

— Հետաքրքիր է, իսկ նրանից առա՞ջ,— հարցրեց մայրը:

— Չգիտեմ,— ասաց Տիգրանը,— ես երևի չորրորդ կամ հինգերորդ տերն եմ:

— Դե ասա տնից տուն է թափառում, էլի,— տխուր ասաց մայրը,— խե՞ղճ շուն:

Նրա վրա անասելի թախիծ իջավ: Ահա ինքը, այսպես չուզելով դուռը բացեց: Ներս մըտնելու պահին այնպես էլ հարցական հայացքով էր նայում՝ կթողնե՞ն, թե՞ ոչ: Իրոք, տխուր իրողություն: Ինչո՞վ է մեղավոր խեղճ կենդանին: Մի ժամ առաջ Ռիկկին չգիտեր, որ իր սիրելի տերն արդեն զենքերը վայր է դրել. այսինքն՝ պապի ջղայնության հետ պայքարելը դադարեցրել է: Եվ ահա թերթի մեջ է փաթաթում շան «ներքնակը», որի վրա գիշերները գունդուկծիկ քնում է: Կաշեփոկն էլ վերջին անգամ է ամրացնում ու դրա համար անշտապ ու խնամքով է անում: Տխուր, շատ տխուր իրողություն:

Արդեն մութ էր, և մորը թվում էր, որ երբ խոհանոցի լույսը վառի, թափառաշրջիկ Ռիկկիին կտեսնի ամանները հոտոտելիս: Բայց, երբ լույսը վառեց, տեսավ, որ Ռիկկին սահմանը չէր անցել. շունը կանգնած էր տախտակից այն կողմ և անթարթ իրեն էր նայում: «Ինձ է ուսումնասիրում»,— անցավ մոր մտքով: Հետո դիմումը ձայնին խիստ արտահայտություն տալով՝

— Կորի՛,— ասաց,— կորի՛ քո տեղը:

Ռիկկին սուսուփուս հեռացավ, գնաց Տիգրանի ցույց տված անկյունը: Իրոք որ՝ հասկացող շուն էր: Եվ մայրն ավելի տխրեց:

Երեկոյան Տիգրանը կես ժամով շանը դուրս տարավ: Երբ վերադարձավ, ասաց.

— Ա՜յ մամ, սա կանաչի գիժ է: Տեսնեիր, թե ինչպե՜ս էր ձգվում դեպի խոտը: Հազիվ եմ տուն բերել:

Մինչ ուշ երեկո կողքի սենյակից մայրը լսում էր, թե ինչպես իր որդին զանգում է ընկերներին և հայտնում մեծ նորությունը՝ «Ես շուն ունեմ: Վաղը եկեք տեսնեք»: «Երեխա է, երեխա: Բայց ի՞նչ է լինելու վաղը: Դուռը փակելու ենք, գնանք աշխատանքի, առավոտվա ութից մինչև երեկոյան հինգ-վեցը»:

Գիշերը մայրը մի քանի անգամ արթնացավ: Անհանգիստ էր: Օտարության մի շունչ էր մըտել ներս: Այնտեղ, պատշգամբի այն անկյունը, որտեղ կծկվել էր շունը, մոտ ի մոտո անհանգստության աղբյուր էր դարձել: Մի անգամ վեր կացավ գնաց խոհանոց, լույսը վառեց. Ռիկկին կանգնած էր տախտակի ետևում ու նայում էր իրեն. «Տեսնես նախապե՞ս էր կանգնած, թե՞ իմ ոտնաձայնը լսեց»: Քիչ հետո նորից գնաց: Լույսը չվառեց. գիշերվա խավարում նկատեց Ռիկկիի կերպարանքը՝ նույն տեղում, նույն դիրքով կանգնած: «Սա մեզ հսկում է, կամ էլ շատ զգոն շուն է»:

Մայրը վերադարձավ իր անկողինը: Զարմանալի բան. շատ վաղուց լսած մի դեպք վերհիշեց: Դեպք, որը տեղի էր ունեցել այն ժամանակ, երբ ինքը բարուրի երեխա էր: Մանկուց ինչքան որ խոսք էր բացվել շների նվիրվածության մասին, մայրն այդ դեպքն էր պատմել: Երևի դա էր պատճառը, որ նրան թվում էր, թե ինքն էլ է ականատես եղել: Այն ժամանակ իր մայրը, այսինքն՝ Տիգրանի տատը, աշխատում էր գործարանում: Հերթափոխային

աշխատանք էր և պատահում էր, որ գիշերն էր վերջացնում գործը: Գալիս էր տուն հինկերի ադմուկից ու պտույտից հոգնած, աչքերը շաղված ու դեռ գլուխը բարձին չդրած՝ քնում էր: Այդպիսի մի օր, խոր քնի մեջ դռան ետևում իրենց շան՝ Ժուլիկի հաչոցն է լսում, հետո, կարծես մեկը ձեռքով թակում է դուռը: Ո՞վ կլինի, արթնանալով մտածում է՝ գո՞ղ է, թե՞ մոլորված ճամփորդ: «Ժուլի՜կ, Ժուլի՜կ»,— բղավում է իր տեղից: Ժուլիկն հաչոցով է պատասխանում: Չէ՛, օտար մարդ չկա, երևի ինձ թվաց, թե դուռը թակում են, մեր Ժուլիկը դռան ետևում է, ո՞վ կհամարձակվի մոտենալ: Քիչ հետո՝ դարձյալ շունը կլանչում է ու դարձյալ լսվում է դռան թակոցը: Իր մայրը, այսինքն՝ Տիգրանի տատը, կարծելով, թե ականջը ձայն է տալիս, նորից քնում է: Բայց այս ի՞նչ է. կարծես մեկը հեռվից թափ առած գալիս է ու երկու ձեռքով թրըմփ՝ դռանը: Եվ ապա՝ Ժուլիկի հաչոցը: Այս շունը կամ սոված է, կամ հիվանդ,— մտածում է նա ու մի կերպ վեր կենում: Մոտենում է դռանը. ա՜յ քեզ բան, դուռը, ճիշտ է, ծածկված է, բայց սողնակը գցած չէ: «Վա՜յ սատկես դու, Ժուլի՛կ, ի՞նչ իմացար, որ մոռացել եմ դուռը փակել: Վա՜յ սատկես դու, Ժուլի՛կ, պահապա՞ն Ժուլիկ»: Այդ ժամանակ Ժուլիկն աշխույժ թռչկոտում է, ու երբ լսում է սողնակի չխկոցը, կլանչելով վազում է փողոց:

Լենինականի հին թաղերից մեկն էր դա. բակ կար, տարածություն կար: Ո՞վ էր տանը շուն պահում: Այդ մտորումների մեջ էր, որ լըսեց զարթուցիչի զնգոցը:

Լուսանում էր:

*(Շարունակելի)*



## Գիտե՞ք որ...

● Եթե, օրինակ, սիսեռի մի հատիկը տալիս է մինչև 800 հատիկ, ցորենն ու գարին 200—800, ապա մոլախոտ թեղուկը տալիս է մինչև 100 հազար հատիկ սերմ, իսկ կեչին մինչև 800 հազար:

● Միջերկրական ծովի ափերին, չոր, քարքարոտ տեղերում աճում է այսպես կոչված «կողմնացույցային ծառը»—հալեպյան եղևնին, որի բարձրությունը հասնում է 10—15 մետրի: Ծառի բունն անպայման ծովում է դեպի հարավ և այդ ծառով կարելի է որոշել աշխարհի չորս կողմերը:

● Հյուսիսային Աֆրիկայում աճող «սատանայի ծառը» իր ծառակեղևի մեջ ունի մեծ քանակությամբ ֆոսֆոր և առատորեն լույս է արձակում: Գիշերները այդ ծառի տակ կարելի է նույնիսկ կարդալ:

● Սովետական Միության գիտությունների ակադեմիայի գլխավոր բուսաբանական այգու Գագրայի բաժանմունքում աճում է այսպես կոչված «սեխի ծառը»: Նրա հայրենիքը Կենտրոնական Ամերիկան է:

Ֆլորիդայում այդ ծառերը կոչվում են «վանտի», որը նշանակում է «առողջ եղիր»: Այդ ծառը հայտնի է նաև «կյանքի ուկն ծառ» անունով: Ծառը պտղաբերում է միայն մի անգամ և տալիս է 40—50 հատ 2—8 կիլոգրամանոց պտուղ, որոնք ոչնչով չեն տարբերվում սովորական սեխից: Այդ ծառերից պատրաստում են մինչև հարյուր տեսակ զանազան դեղորայք:




լու համար պատրաստ են նաև այժմ՝ նրա հիմնադրումից 17 տարի անց:

Ակումբը մշակեց նաև իր կանոնադրությունը, կազմեց աշխատանքի պլան, որի կարևոր կետերից մեկը նամակագրությունն էր աշխարհի շատ երկրների հետ:

Եկեք գնանք այդ նամակների հետքերով: Կարմիր լպպտերիկով նշենք ծագող արևի երկիրը՝ հեռավոր Ճապոնիան, այնտեղից փոստային փոխադրամիջոցով հասնենք Ամերիկայի Միացյալ Նահանգներ, ապա Կուբա, հետո Ֆրանսիա, Լեհաստան, Գերմանիա, Հունգարիա, Չեխոսլովակիա, Բուլղարիա... Այս թվարկումով քարտեզի արտասահմանյան մասը չի ավարտվում. օրեր են

# ՄԵՆՔ ԱՄԵՆ ԻՆՉ

1962 թվականն էր: Չարենցի անվան անգլիական թեքումով միջնակարգ դպրոցի ավագ ջոկատավար Ռոզա Յագուլյանը բարձր դասարանցի մի խումբ աշակերտների հետ հիմնադրեց ինտերնացիոնալ բարեկամության իրենց ակումբը, որը պետք է նպաստեր բարեկամական կապերի ընդլայնմանը և անգլերեն գիտելիքների իմացության խորացմանը: Ակումբը կոչեցին «Կոունկ»:

Ակումբի կազմում ընդգրկվեցին 15 շնորհալի աշակերտներ, որոնք թե՛ լավ էին սովորում և թե՛ գիտեին նկարել, քանդակել, երգել, պարել, արտասանել: Ասենք, որ այդ երկու պայմանները ակումբի անդամ դառնալու համար պատրաստ են նաև այժմ՝ նրա հիմնադրումից

եղել, երբ Չարենցի անվան դպրոցի հասցեով ստացվել են 300, 400, 500 նամակ: Բարեկամությունն ամրապնդվել է գրքերի, ալբոմների, փողկապների, կրծքանշանների, պետական խոշորագույն գործիչների դիմանկարների և այլ բովանդակալից ու հետաքրքիր նվերների փոխանակումներով: Լեհ

# ՉՊԱՏՄԵՑԻՆՔ



բարեկամները, օրինակ, ուղարկել են Եղիշե Չարենցի ստեղծագործությունների լեհերեն թարգմանությունը, գիրք, որն այժմ գտնվում է մեծ բանաստեղծի տուն-թանգարանում: Կուբացի դպրոցականների նվերն է Ֆիդել Կաստրոյի ասեղնագործ դիմանկարը և իրենց ձեռքով պատրաստված կաշվե պայուսակը: ԱՄՆ-ի երեխաները ռեգբիի գնդակ են ուղարկել, չեխ պիոներները ալբոմ՝ իրենց պիոներական առօրյան պատկերող նկարներով:

Ահա և փողկապը՝ մեծ ճանապարհորդը: Այն ճամփորդել է երկրի ներսում, տանը՝ Սովետական Միության մեջ, եղել է բոլոր 15 հանրապետություններում: Փողկապի կենտրոնական մասում ՌՍՖՍՀ գերբն է, որի տակ Մոսկվայի № 67 դպրոցի աշակերտները գրել են՝ «Մոսկվա-Երևան — Բարեկամություն»: Այս դպրոցի աշակերտներն էլ փողկապն ուղարկել են Ուկրաինայի պիոներներին, վերջիններս այն հանձնել են իրենց բելոռուս բարեկամներին, ապա փողկապը հասել է մերձբալթյան երկրներ, իջել դեպի Միջին Ասիայի տաք հանրապետությունները, եղել է Մոլդավիայում, Վրաստանում, Ադրբեջանում և վերջում կրկին հանգրվանել հարազատ դպրոցի հարկի տակ: Սերտ է կապը Բաքվի դպրոցականների հետ: Վերջերս բաքվեցիները ծրարով հող են ուղարկել իրենց հայ բարեկամներին, որը վերցված է անմահ 26 կոմիսարների գերեզմանից:

Կարմիր լապտերիկները խիտ ցանց են կազմում նաև մեր հանրապետությունում և, հատկապես, մայրաքաղաք Երևանում: Դպրոցում հաճախ են եղել գյուղատնտեսական, պոլիտեխնիկական և այլ բուհերի ուսանողներ, գեղեցիկ նվերներ թողել իրենց կրտսեր ընկերներին՝ ի նշան մեծ բարեկամության:

Մենք ամեն ինչ չպատմեցինք ակումբի մասին: Ցանկացողը կարող է գրել կամ անձամբ գնալ դպրոց. այնտեղ ակումբի գործերին սիրով կծանոթացնեն դարձյալ նույն ավագ ջոկատավար Ռոզա Յազոլյանը և ակումբի անդամ իր օգնականները:

*ՏԱՆՅԱ ԹԱՆԴԻԼՅԱՆ*






ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
*Բանասիրության դոկտոր*

## 17. ԸՍՏ ԱՐԺԱՆՎՈ՞ՒՅՆ, ԹԵ՞ ԸՍՏ ԱՐԺԱՆԱՎՈՒՅՆ ԿԱՄ՝ ՀՆԱԲԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Իհարկե՛, կասի իմացողը, ըստ արժանվույն և ոչ թե ըստ արժանավույն: Երկրորդ ձևը կոպիտ սխալ է: Բայց շատ հաճախ լսում ենք այդ սխալ ձևը կամ, որ ավելի վատ է՝ արժանավույն կերպով:

Ճիշտ այդպես լսում ենք գրաբարից առնված ուրիշ բառերի ու դարձվածքների ուրիշ սխալ կիրառություններ. ոտնկայս, երբ ճիշտը հոտնկայս-ն է, ի օգուտ այսինչի, երբ ճիշտը հօգուտ-ն է և այլն:

Ո՞րն է այս սխալների ակունքը: Այն, որ մարդիկ ուզում են «գեղեցիկ» ու «հանդիսավոր» խոսել, այդ պատճառով տեղի-անտեղի դիմում են գրաբարյան ձևերի՝ դրանց ստեղծման կանոնները չիմանալով: Այսպես, օրինակ, չգիտեն, որ եթե ի նախդիրին հաջորդում է ձայնավորով սկսվող բառ՝ այդ ի-ն հնչում է հ (գրաբարում գրվել է յ, որ հնչել է հ): Ուստի և՝ ի վնաս, ի գիտություն, բայց՝ հօգուտ, հոտնկայս, հանպատրաստից, հուրախություն, թեև ի ուրախություն ձևն այնքան է տարածվել ու արմատացել, որ լեզվաբանները դա այլևս սխալ չեն համարում:

Բոլոր այս ձևերը հնաբանություններ են (արխայիզմներ), որոնք կան բոլոր լեզուներում: Դրանք այն բառերը, ոճերն ու դարձվածքներն են, որոնք գալիս են հնից և գործ են ածվում խոսքին ոճական գունավորում հաղորդելու, հանդիսավորություն տալու համար: Պատահական չէ, որ դրանք ծաղկում են հատկապես հուզականորեն շեշտված միջավայրում, շատ ուրախ կամ շատ տխուր հանդեսների ժամանակ՝ «հոտընկայս հարգել այսինչի հիշատակը», «ընտանյոք հանդերձ հրավիրվում են» և այլն: Վատ չէ, որ հին ոճերը կենդանություն են առնում ժամանակակից լեզվի մեջ, ընդհակառակը, ճաշակով և իմացությամբ կիրառվելու դեպքում դրանք յուրահատուկ հրապույր են տալիս լեզվին, վատն այն է, որ սխալ ու անհաջողակ կիրառության դեպքում դրանք տգեղացնում են լեզուն և մատնում խոսողի լեզվական անգիտությունը:

Ուրեմն, չիմանալու դեպքում շատ ավելի լավ է գործի դնել դրանց աշխարհաբար համարժեքները՝ «ոտքի կանգնելով հարգենք...» «արժանի կերպով գնահատենք...» և այլն՝ առանց սխալվելու վտանգին ենթարկվելու:

Հնաբանությունների նշանակությունն առանձնապես մեծ է գեղարվեստական գրականության մեջ, ուր նրանք անփոխարինելի դեր են կատարում հին լեզվի հրապույրը, անցած-գնացած ժամանակների շունչը հաղորդելու համար: Դրա մեծ վարպետն էր Դերենիկ Դեմիրճյանը: «Վարդանանք» վեպում հանդիպող «հրաման ի կատար», «իմ հետև՞ից, ո՞ն ա՞նդր...» «տուր գլխիս գույժը բոթաբեր», «ժամն է տարաժամ», «զինվորյալ մանուկ» և մեծաթիվ ուրիշ հնաբանությունների շնորհիվ գրողը հիանալի կերպով հաղորդել է պատմական հեռավոր ժամանակների շունչը:

Պետք է իմանալ նաև, որ հնաբանություն համարվում են ոչ միայն

գրաբարից եկող, այլև առճասարակ բոլոր այն բառերն ու դարձվածքները, որոնք գոյացել ու գործ են ածվել առաջներում, անցյալ դարում, թեկուզ մի քանի տասնյակ տարի առաջ և այս կամ այն պատճառով դուրս են մղվել կիրառումից: Մտաբերենք ընդնում շատ հարգելի վարժարան, վարժապետ, վարժուհի, վարժապետանոց բառերը: Վաղուց ի վեր դրանք դուրս են մղվել կիրառումից, բայց երբեմն, մեկ էլ տեսար, մեջտեղ են գալիս: Ի՞նչ պատճառով: Մենք հիշեցինք հնաբանության միջոցով խոսքին հանդիսավորություն կամ պատմական շունչ հաղորդելու դեպքերը, հիմա հեգնական վերաբերմունք արտահայտելու օրինակը կբերենք: Երբ մեկին ասում են՝ վարժապետ, հնում շատ պատվական բովանդակություն կրող այդ բառն այսօր հնչում է իբրև հեգնանք: Ահա ինչու Էդ. Աղայանի բացատրական բառարանում այդ բառի դիմաց գրված է. «Հետամնաց՝ գիտելիքներից ու մանկավարժական հմտությունից զուրկ ուսուցիչ»: Ժամանակի ընթացքում բառը փոխել է իր իմաստը, դարձել է իր հակադարձը:

Ա՛յ թե ինչ տարօրինակ կենսագրություն են ունենում բառերը:

Հիմա մենք այլևս չենք ասում բառեր, որոնք ոչ հեռու անցյալում գործածական էին չափազանց՝ լիկկայան, բանֆակ, խրճիթ-ընթերցարան, կուլակաթափ, ձայնազուրկ, մենատնտես և այլն, և այլն: Դրանք կատարյալ հնաբանություններ են: Բայց չէ՞ որ ընդամենը մի քանի տասնյակ տարի առաջ դրանք կատարյալ նորաբանություններ էին:

Ի՞նչ պատահեց այդ բառերի հետ, ինչպե՞ս է լինում, որ նորաբանությունը դառնում է հնաբանություն: Այս ամենի մասին՝ հաջորդ անգամ:

*ՊԵՏՐՈՍ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

## ԱԳՌԱՎՆ ՈՒ ԼՈՒՍԱՏԻՏԻԿԸ

Ագռավը վերից
Լուսատիտիկին
Ասաց հեգնաբար.
—Այդքան կարճ ապրում,
Աշխարհից, ասա՛,
Ի՞նչ ես հասկանում:

Լուսատիտիկը
Ձայն տվեց նրան.
— Ես իմ կարճ կյանքում,
Քեզ պես չեմ կռռում,

Լույս տալով եմ միշտ
Գալիս ու գնում:

## ՍՓՈՓԱՆՔ

Չինարի մի ծառ,
Խեղճ խնձորենուն
Ուզեց թե ծաղրել.
— Այսօր մի անցորդ
Խնձորդ էր ուտում,
Բայց գովք ու պարծանք
Ինձ էր շնորհում:

Իսկ խնձորենին մեղմորեն ասաց.
— Թող որքան ուզեն,
Մարդիկ քեզ գովեն,
Անպտուղն է լոկ
Սփոփվում խոսքով,
Իսկ պտղատուն՝ իր
Լիառատ բերքով:

## ԹՈՒԹԱԿԸ

Թութակը անվերջ
Կոկորդն էր պատռում.
— Տան ամբո՛ղջ գործը
Երկուսս ենք անում:

Իսկ ձագը ասաց.
— Բան չեմ հասկանում,
Վանդակում թառել,
Ե՞րբ ենք աշխատում:

Թութակը ձագին
Ասաց. — Դու կրկնի՛ր,
Քեզ իբրև թութակ
Լավ դրսևորիր,
Խոսի՛ր, հա՛ խոսիր...



# ԵՐԵԽԱՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

Հունիսի 1-ին, մայրաքաղաքի լճակների շուրջը, հրապարակներում ու նշանավոր հուշակոթողների մոտ երգով ու պարով հանդես եկան դպրոցների և պիոներպալատների գեղարվեստական խմբերը։ Ճարտարապետ Ալեքսանդր Թամանյանի հուշարձանի մոտ ելույթ ունեցան 26 կոմիսարների անվ. շրջանի «Սևան» անսամբլը և Օրջոնիկիձեի շրջանի «Արևիկ» վոկալ-գործիքային խումբը։ Նրանց ելույթները մեծ բավականություն պատճառեցին մանուկ ու մեծահասակ հանդիսականներին։





Լուսանկարները՝ ՏԻԳՐԱՆ ՓԻՇԱՅԱՆԻ

# ՀՈՂԸ ՔԱՂԱՔԱԲՆԱԿՆԵՐԻՆ ՆՈՒՅՆՔԱՆ ՀԱՐԱԶԱՏ Է

Ամռան ամիսներին Սպիտակի շրջանում գործում են երեսուն աշակերտական-արտադրական բրիգադներ: Արեվաշողի, Ծաղկաբերդի, Մեծ Պարնիի դպրոցների սաները աշխատասիրությամբ ու աչքի ընկնող գործերով բարի անուն են հանել շրջանում: Նրանց կողքին դժվար է առավելության հասնել, ուշադրություն գրավել: Գյուղատնտեսական աշխատանքներին անսովոր Երևանի Մայակովսկու դպրոցի սաները գիտեին այդ, երբ մեկնում էին Սպիտակի աշխատանքի և հանգստի ճամբարը: Հանրապետությունում արդեն վեց տարի է, ինչ կազմակերպվում են նման ճամբարներ և նրանց օգնությունը քիչ դեր չի խաղում գյուղատնտեսական մթերքների մշակման ու արտադրության գործում: Մայակովսկու անվան դպրոցի հարյուր բարձր դասարանցիներ վերջին երեք տարիներին հանգրվանում են այստեղ և աշխատանքի ու հանգստի ճամբարների մրցությունում արժանացել են փոխանցիկ դրոշի:

Սպիտակում տարեկան վեց հարյուր հազար տոննա շաքարի ճակնդեղ է արտադրվում: Երևանցի պատանիներ Արթուրը, Լարիսան, Իգորը, Իննան ու մյուսները մեկ ամսվա ընթացքում քսան հեկտար ճակնդեղ մշակեցին և գիտեին, որ ամռան լավ խնամքից է կախված բերքի առատությունը:

— Քաղաքաբնակ պատանիները հեշտությամբ էին կատարում հողագործական աշխատանքները,— պատմում է ԼԿԵՄ Սպիտակի շրջկոմի քարտուղար Մ. Ֆարմանյանը:— Նրանք աչքի ընկան ոչ միայն շաքարի ճակընդեղի ածիլները պահանջվող հեռավորությամբ նոսրացնելու, հողը փխրեցնելու ու քաղհանելու, այլև եգիպտացորենի, կաղամբի, խոտհնձի աշխատանքներում: Նրանք տասնյակ հեկտար հող մաքրեցին քարերից, շաբաթօրյակներ անցկացրին հայ և ռուս ժողովուրդների բարեկամության հուշակոթողի շինարարությունում:

Նրանց աշխատանքները ղեկավարում էր դպրոցի դիրեկտոր ընկ. Ս. Սիմոնյանը, որն աշակերտների համար նաև հետաքրքիր էքսկուրսիաներ է կազմակերպել : Երեխաները եղել են շրջանի պատմական վայրերում ու բնության գողտրիկ անկյուններում:

*Մ. ՎԱՀԱՆՅԱՆ*



# ԲԱՐՈՒԹՅՈՒՆ

Ա. ԿՈՆԵՎՍԿԻ

Բոլոր ինքնաթիռները անհույս կերպով ուշանում էին։ Մյուս ուղևորների հետ, ես էլ գնացի ուղերթները կարգավորող հերթապահի մոտ, ներս ընկա օդանավակայանի պետի աշխատասենյակը, բողոքեցի, սպառնացի՝ բան դուրս չեկավ։ Վերադարձա սպասասրահ և սկսեցի բարձրաձայն վատաբանել օդագնացության աշխատողներին։

— Նրանք մեղավոր չեն,— հանկարծ հայտարարեց կողքիս նստած ամրակազմ տղամարդը։— Այս բոլորն իմ մեղքով է։

Ի պատասխան իմ զարմացական հայացքի, նա ինձ մի պատմություն արեց, որը կաշխատեմ վերապատմել բառացի։

— Ես ձախորդ մարդ եմ։ Այո՛, այո՛, չափից դուրս ձախորդ, արտոնագրված, պրոֆեսիոնալ ձախորդի մեկը։ Եթե ես նոր կոստյում եմ հագնում, ապա անպայման պիտի ցեխոտվեմ, նույնիսկ երբ շուրջս ցեխաջրի հետք անգամ չկա։ Եթե շղթայից մի շուն է պոկվում, ապա ամբոխի մեջ հատկապես ինձ պիտի գտնի։ Իսկ եթե պատահաբար հարևանիս կծի, կատաղության դեմ ինձ պիտի սրսկեն։ Եվ այսպես, ամբողջ կյանքում, մանուկ հասակից։ Եթե դասս սովորած էի լինում, ոչ մի դեպքում չէին հարցնում։ Իսկ եթե որևէ բան չէի իմանում, ապա քննության ժամանակ հանում էի հենց այդ հարցաթերթիկը։ Այդ պատճառով էլ դադարեցի ջանք թափել, չարչարվել։ Եվ ահա, Յուրային հանձնարարեցին, որ «ձիգ տա», օգնի ինձ։ Այսպես նա օգնեց ինձ ուսումնարանում սովորելու չորս տարիներին և ձգեց հասցրեց մինչև ավարտելը։ Ինձ աշխատանքի նշանակեցին ծայր հյուսիսում։

Մինչդեռ Յուրան իբրև գերազանցիկ ուներ ընտրության իրավունք՝ Մերձմոսկովյան շրջան, Կովկաս կամ Ուկրաինա։

Բաժանումը տխուր պիտի լիներ, բայց հասկանում էի, որ ուրիշ ելք չկար։ Եվ հանկարծ մի հավաքույթում իմացա, որ նա էլ է ծայր հյուսիս մեկնում։ Նշանակել են՝ ասաց։ Բայց հետո տղաները ինձ ճշմարտությունն ասացին, թե ինձ համար է խնդրել, որ իրեն այնտեղ նշանակեն։ Ես նրան մի կողմ տարա ու ասացի.

— Ջահել կին ունես, նրան պահիր-պահպանիր։

Իսկ նա պատասխանեց.

— Դե ես հենց ի սեր նրա էլ գնում եմ. կանայք ցրտում ավելի երկար են պահպանում ջահելությունը։

Ու ժպտում է...

Իսկ նրա ժպիտը իքներդ էլ գիտեք ինչ ժպիտ էր՝ մարդ չկար, որ դիմանար այդ ժպիտին։ Ես նրան մի տեսակ նախանձում էի, և ինքս էլ սկսեցի ժպտալ։ Հատկապես այնպիսի հավաքույթներում, ուր աղջիկներ կային։ Ժպտում եմ ու այդպես ժպիտը դեմքիս նստում ողջ երեկոն։ Աղջիկները սկսեցին իմ կողմը նայել և քչփչալ։ Իսկ ես ուրախանում եմ ու ավելի լայն բացում բերանս։

Մի անգամ էլ մի այսպիսի խոսակցություն հասավ ականջիս. մեկը մյուսին շշնջում է.

— Էս ինչո՞ւ է բերանը ծռվել:

Իսկ մյուսը պատասխանում է.

— Երևի միջանցիկ քամուց է:

Այդ օրվանից խսպառ դադարեցի ժպտալ:

Առհասարակ ես հումորի զգացում չունեմ: Ինչ անեկդոտ ուզում է լինի, մի ժամ հետո է տեղ հասնում:

Ընկերներս ձեռ են առնում.

— Մի շիշ կոնյակ ենք խոստանում քո առաջին կատակի համար:

Մի անգամ գնացինք բուժքննության: Դա արդեն ծայր հյուսիսում էր, հոսպիտալում: Նևրոպաթոլոգը, որ մի ծեր կին էր, սկզբում ծնկներիս մուրճով խփեց, հետո թե.

— Ուշադի՛ր նայեք մատիս:

Եվ սկսեց այդ մատը քթիս առաջ տանել բերել: Մտածեցի՝ արի մի կատակ անեմ ու հաչեցի:

Էս ծեր բժշկուհիս, թրըմփ, հատակին ընկավ և ուշաթափվեց:

Հիմա էլ ես սկսեցի նրա ծնկներին մուրճով թխկթխկացնել, մինչև ուշքի բերի: Դե, պարզ է, ընկա կալանատուն: Յուրան հինգ օր շարունակ շիլա էր բերում ինձ համար:

Հասկացա, որ կատակն ինձ լավ բանի չի հասցնի, և այլևս երբեք կատակ չարի: Բացի այդ, կատակելու տրամադրություն էլ չկար: Բաժանվեցինք ես ու Յուրան, մեր զորամասից ետ կանչեցին նրան: Այդ օրվանից ի վեր, երկու տարի չտեսա նրան: Կարդալը կարդում էի նրա մասին, հաղորդումները լսում էի, բայց գրել չէի համարձակվում: Նրա ինչի՞ն եմ պետք, մտածում էի, երբ նա այսպես հռչակավոր է դարձել...

Մի անգամ առողջարանից վերադառնալիս Մոսկվայով պիտի անցնեի: Ինքնաթիռը մեր կողմը պիտի թռչեր միայն հաջորդ օրը, այնպես որ ստիպված էի հյուրանոցում տեղավորվել:

Հենց նոր էի ճամպրուկս բաց արել՝ զանգ.

— Ազատեցեք համարը:

— Ի՞նչ է պատահել:

— Ջազի արքան է ժամանել: Ձեր սենյակում պիտի ապրի:

— Ախր իմ սենյակը փոքր է:

— Նրան ավելի մեծը պետք չի: Նրա նվագախումբն էլ է փոքր:

Ես, իհարկե, զայրացա, բայց և այնպես իրերս հավաքեցի:

Տասը րոպե անց նորից զանգ.

— Ճամպրուկը հավաքե՞լ եք:

— Հավաքել եմ:

— Սպասեցե՛ք:

Եվ հանկարծ բացվում է դուռը ու ներս է մտնում Յուրան: Ազնիվ խոսք: Գրկեց, համբուրեց: Իսկ ես սառել մնացել եմ:

— Այդ ինչպե՞ս գտար ինձ:

— Տղաներն ասացին, որ Մոսկվայով ես թռչելու: Ես գիտեի, որ գլխի չես ընկնի զանգ տալ: Ստիպված էի զանգահարել բոլոր հյուրանոցները:

Հետո Յուրան վերցրեց ճամպրուկս և քայլեց դեպի դուռը:

—Այդ ո՞ւր,— հարցնում եմ:

— Ինչպե՞ս թե ուր՝ մեր տուն:

— Ի՞նչ ես ասում... Ախր ի՞նչ կարիք կա: Այստեղ էլ լավ է:

— Ի՞նչ է, մոռացա՞ր ջազի արքային:

Ու քրքջաց:

Եվ ես նոր միայն գլխի ընկա:

— Ուրեմն այդ դո՞ւ էիր զանգ տալիս:

— Իհարկե,— պատասխանեց,— այլապես մի ամբողջ օր պիտի համոզեի քեզ, մինչդեռ ջազի արքայի դեմ կատարելապես անզոր ես:

Ու տարավ ինձ իրենց տուն: Վալյայի հետ միասին կերցրին, խմեցրին ինձ: Հետո Վալյան երեխաների հետ

քնեց ննջարանում, իսկ ես ու Յուրան պառկեցինք հյուրասենյակում՝ բազմոցի ու ծալովի մահճակալի վրա: Եվ մինչև առավոտ աչք չփակեցինք, հիշողությունների հետ էինք՝ և այն, թե ինչպես հաչեցի ծեր կնոջ վրա: Հետո նա ինձ օդանավակայան տարավ և տոմս ձեռք բերեց: Ամբողջ ճանապարհին պախարակում էր, թե ինչո՞ւ այսքան տարի ոչ մի լուր չեմ տվել իմ մասին:

Մի խոսքով, դուք այնքան էլ մի հավատացեք իմ քրթմնջոցին, թե ես անհաջողակ մարդ եմ: Ի՞նչ ձախորդ մարդ, եթե իսկական ընկեր եմ ունեցել... Եվ այն էլ ոչ այլ ոք, քան ինքը՝ Յուրի Գագարինը...

Ճիշտն ասած վերջին ժամանակներս նույնիսկ բախտս բերում է. ինձ լավ կին հանդիպեց, ընտանիք կազմեցի: Պաշտոնավայրում էլ ամեն ինչ կարգին է, հրամանագրերում գովում են, կոչումս բարձրացրին... Իսկ վերջերս մի առաջադրանք կատարելուց հետո շքանշանի ներկայացրին: Սկզբում այս բոլորի վրա զարմանում էի, կարծես հրաշք լիներ: Հետո միտք արի. գուցե Յուրայի բարությո՞ւնն է ինձ սատար լինում... Իսկապես որ, այդպես լինում է, չէ՞. մարդը այլևս չկա, իսկ նրա բարությունը ուղեկցում է քեզ...

Ահա և իմ օդանավի թռիչքը հայտարարեցին: Ոչինչ, ոչինչ շուտով ձեր բախտն էլ կբերի: Ո՞ւր եմ թռչում: Թռչում եմ Պերվոուրալսկ: Մեր մեխանիկին փորձանք է պատահել: Թռչում եմ օգնության:

Թվում է, Յուրան իր բարությունը ժառանգություն է թողել ինձ, որն անպայման իմ հերթին պետք է փոխանցեմ մեկ ուրիշի:

*Թարգմ. ՍՈՆԱ ԱՅՎԱԶՅԱՆ*

## Գիտե՞ք որ...

● Կալկաթայի մոտ հնագույն բուսաբանական այգիներից մեկում աճում է մի թզենի, որը 1,2 հեկտար տարածություն է զբաղեցնում: Հեռվից այդ ծառը նման է անտառակի: Նրա շառավիղները կախվում են ցած, հասնում գետնին, ամրանում են այնտեղ և փոխվում են բնի: Այսպիսով հարյուրավոր բներ են առաջացել: Ծառը 200 տարեկան է: Հիմնական բունը վաղուց ոչնչացել է ինչ-որ սնկային հիվանդությունից:

● Սոչիում աճում է «Բարեկամության ծառը», որի վրա մինչև 50 տեսակի ցիտրուսային մրգեր են հասնում: Ծառը պատվաստել են թե՛ տեղի բնակիչները և թե՛ հյուրերը:

● Ինչքա՞ն խորն են գնում ծառերի արմատները հողի մեջ: Հարավարևմտյան Աֆրիկայում աճող մի ակացիայի արմատները հասել են 68 մետր խորության:

● Հայտնի է, որ ծառերը աշնանը թափում են իրենց տերևները: Իսկ դողդոջուն կաղամախին ազատվում է նաև «ավելորդ» ճյուղերից, այսպես ասած՝ ճյուղաթափ է լինում: Նույն հատկությունը ունեն նաև կաղնին, ծփին, որոշ տեսակի ուռենիներ և բարդիներ:

ԴԱՎԻԹ ՀՈՎՀԱՆՆԵՍ

# Պստիկ է, բայց ճստիկ է





1. Երբ Բեկկին լույս աշխարհ եկավ
ու երբ տեսավ,
որ մենակ չէ ինքն աշխարհում,
որ արևի շողերի տակ
հազար տեսակ
կենդանիներ են բնակվում,—
գիլ ծղրտաց՝ հա՛ֆ-հա՛ֆ, հա՛ֆ-հա՛ֆ,
այսինքն թե՝
ի՜նչ է, դուք ինձ չե՞ք նկատում:
Հաչեց, թե չէ՝
մի քանիսը մեր հին բակում
շուռ եկան ու տեսան... ի՞նչ է...
Մի թիզ բոյով մի ոչինչ է,
ինքը՝ սևուկ,
աչքերը՝ մուկ,
վազվզում են դեմքի վրա:





— Ֆի՜, ո՞վ է սա,— ասաց մի հա[illegible]
— Ինչ էլ փո՜քր է,—մռռաց [illegible]ատուն:
— Խը՛ռ-խը՛ռ, խը՛ռ-խը՛ռ, սա[illegible] էլ է [illegible],—
զարմանքով հարց տվեց խոզը:
Իսկ աքլորը, այդ գոռոզը
թռավ-կանգնեց մի մեծ քարի
ու ձայն տվեց աղավարի.
— Ծուղրուղո՜ւ...
նուտի՛կ, լսի՛ր, քեզ բան ունեմ ասելու,—
արի՛ մտիր իմ թևի տակ.
թե չէ՝ այդպես թույլ ու մենակ
դու ինչպե՞ս ես ապրելու...

2. Բայց մեր Բեկկին
այնպես հեշտ-հեշտ զիջողը չէր և ո՛չ մեկին:
Ճիշտ է, մարմնո[illegible]
փոքրիկ-սոքրիկ [illegible]





3. Ու սկսեց Բեկկին ուտել.
Էլ ի՜նչ ապուր, էլ ի՜նչ կիսել,
ի՜նչ ձուկ, ի՜նչ միս, ի՜նչ բոքոն հաց,
յուղ ու պանիր, այն էլ՝ հորած,
մեկ-մեկ նույնիսկ՝ լավ խորոված:
Կարագն ուտում էր գնդերով,
երշիկները՝ կճեպներով,
ցերեկները հո՝ պաղպաղակ
տեսակ-տեսակ:
Քնից առաջ քաղցր թեյով
պնդանում էր խեղճը մի քիչ,
իսկ գիշերով վեր էր կենում
ու բերանը
բաց էր գցում—
թեթև բաներ՝ չիր ու չամիչ,
տանձ ու խնձոր· թթու սալոր,
մաքրած ընկույզ, պնդուկ ու թուզ
տռուզ-տռուզ...
Էլ ի՞նչ ասեմ, չգիտեմ ինչ,
ու կարծես թե լավ էր, ոչինչ,
միայն թե մեր Բեկկին ուտում—
վատ էր քնում.
գուցե սոված փորով աչքին
քուն չէ՞ր գալիս...
Այսպես՝ քանի օր ու ամիս
[illegible] Բեկկին,—



փոքրիկ-մոքրիկ մի թիզ շունիկ,
բայց շա՛տ քաջ էր, շա՛տ սրտոտ էր.
այնպես հաչեց,
այնպես ճղղաց,
որ աքլորը այն անվեհեր
կանգնած տեղից գլորվեց ցած:
Բեկկին ճղղաց, վրա տվեց.
— Հապա լսե՛ք,
որ խոսում եք այդպես մեծ-մեծ.
ճիշտ է, ինձնից առաջ եք դուք
աշխարհ եկել,
և ամեն ինչ՝ փորիկ-մորիկ, ոտ ու գլուխ,
պոչիկ-մոչիկ,— վերջն, ինչ որ կա,
ձեզ եք վերցրել,
ինձ՝ շունիկիս, բան չեք թողել,
բայց լա՛վ լսեք,
չմոռանաք հետո երբեք.
Ե՛ս էլ լավ-լավ բաներ կուտեմ,
կմեծանամ, ձեզ կհասնեմ,
մի բան էլ այն կողմ կգնամ,
կավելացնեմ ուժս, քաշս ու ետ կգամ,
ետ կգամ ու ձեր բոլորի հախից կգամ,
մի լա՛վ կգամ...
... ...











Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

կերավ Բեկկին,—
էլ ուտելու բան չմնաց,
բայց շունիկը՝ նույնը մնաց:

Դ. Մեղավորը սորտն էր, սո՛րտը,
ի՞նչ աներ մեր խեղճ քոթոթը,
որ ծնվել էր ոչ թե ահեղ
գամփռ-գելխեղդ,
ոչ թե մի դոգ ամերիկյան,
այլ... մի Բեկկի սովորական:
Ու մեր Բեկկին
մնաց այդպես թուլիկ-մուլիկ,
փոքրիկ-մոքրիկ մի թիզ շունիկ,
բայց շա՛տ քաջ էր,
շա՛տ սրտոտ էր,—
այստեղ էլ նույն սո՛րտը, սո՛րտը...
Ոչ ոք նրան բան չէր ասում,—
աքլոր, կատու,
խոզուկ, հավիկ,—
ընկերներն էին նրա մոտիկ:
Իսկ թե, ասենք, մեկնումեկը տեղացի չէր,
այս բոլորը լավ չգիտեր,
ու մտքովը մի բան անցներ,
Բեկկիին մի
վատ խոսք ասեր,
նա այնպե՛ս էր վրա վազում,
այնպե՛ս հաչում,
պոչը շարժում սպառնագին,
որ միամիտ այդ անգետին
արդեն ուրիշ ելք չէր մնում,
քան թե փախչել,
փախչել-փրկվել,
թե չէ՝ Բեկկին մեր անվեհեր
նրան հազար կտոր կաներ:

Ա՛յ, այդպես է:
Լա՛վ լսեք ու ձեր ականջին
պինդ օ՛ղ արեք.
կարևորը ո՛չ թե ուժն է,
ո՛չ թե մարմնի մեծությունը,
այլ՝ ՈԳԻՆ ու ՔԱՋՈՒԹՅՈՒՆԸ:

*Հազարամյակներ շարունակ մարդկային բազմաթիվ սերունդներ հետազոտում են Տիեզերքի կառուցվածքի ու նրա զարգացման օրինաչափությունները։ Սկսելով մակերեսային, նույնիսկ սխալ ու խարխուլ պատկերացումներից, աստղագիտությունն այսօր հասել է հսկայական հաջողությունների և շարունակում է զարգանալ ավելի մեծ թափով։ Ահա, Տիեզերքի մասին մարդու պատկերացումների զարգացման ու աստղագիտության մի շարք հետաքրքիր հարցերի մասին է գրույցների այս շարքը...*

# 1. ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ

Հիմա դժվար է ասել, թե մարդն առաջին անգամ երբ սկսեց մտածել իրեն շրջապատող աշխարհի կառուցվածքի մասին։ Այդ առթիվ միայն ենթադրություններ կարելի է անել։ Սակայն եկեք փորձենք պատկերացնել, թե ինչ էին հուշում փաստերը մեր հեռավոր նախնիներին, երբ նրանք դեռ նոր էին մտածել սովորում։ Դրա համար պետք չէ նույնիսկ մտովի տեղափոխվել այն ժամանակները, բավական է նայենք մեր շուրջը։ Ինչպիսի՞ն է ներկայանում մեր շրջապատն առաջին հայացքից։ Այն իսկապես նման է մի հսկա տափարակի, որի վրա սփռված են սարեր, ձորեր, գետեր, անտառներ ու զանազան ուրիշ «անհարթություններ»։ Այնպես որ մեր հեռավոր նախնիների համար շատ բնական էր այն համոզումը, թե իրենց բնակատեղին տափակ տեսք ունի, որի վրա բոլոր կողմերից հենված են երկնքի տարբեր ոլորտները։ Իսկ այդ երկնոլորտների վրայով երկնքում շարժվում են Արեգակը, Լուսինն ու մյուս լուսատուները։ Դա նրանց համար նույնքան բնական էր, որքան ձյան ճերմակը, կրակի տաքությունը կամ, ասենք, ցերեկվա լույսն ու գիշերվա խավարը։

Եվ ահա, հին աշխարհի գրեթե բոլոր ժողովուրդները թե՛ Միջագետքում ու Եգիպտոսում, թե՛ պատմական Հայաստանի տարածքում ու Չինաստանում, և թե՛ մնացած վայրերում ստեղծեցին Տիեզերքի առաջին մոդելը, այսինքն՝ պատկերացումը աշխարհի կառուցվածքի մասին։ Հիմա որքան տարօրինակ է, այն ժամանակ նույնքան բնական էր, որ Երկիրն էր գտնվում Տիեզերքի կենտրոնում։ Չէ՞ որ մարդիկ իրենց աստծո արարչագործության ծնունդ էին համարում և պետք է գտնվեին ամեն ինչի կենտրոնում։ Իսկ երկնային բոլոր մեծ ու փոքր մարմինները համեստորեն պտտվում էին Երկրի շուրջը, որը, ինչպես վայել է մարդու բնակատեղիին, հանգստանում էր փառահեղ անշարժության մեջ...

Սակայն ժամանակն անցնում էր, և մարդկությունը օրը օրին վերահասու էր դառնում նորանոր փաստերի։ Առօրյա փորձը մարդուն սովորեցնում էր մտածել, վերանալ թվացող իրականությունից ու փաստերը համադրելով գտնել դրանց պատճառները։ Միաժամանակ իրար օգնության էին գալիս նաև ծնունդ առնող գիտության տարբեր բնագավառները։ Առօրյա պահանջների հիմքի վրա ստեղծված ու արդեն ինքնուրույն զարգացող մաթեմատիկան, հատկապես երկրաչափության բնագավառում, վերացական մտածողության հրաշալի օրինակներ էր հրամցնում։ Ավելին, աստվածներից զատ ուրիշ պաշտամունքներ էին ծնում սկզբնական վերելք ապրող գիտությունները։

Հին Հունաստանում, որը վաղուց ի վեր հայտնի էր մարդկային ուժի ու գեղեցկության նկատմամբ ունեցած խորին ակնածանքով, մաթեմատիկայի զարգացմանն ու տարածմանը զուգընթաց առաջացավ նոր պաշտամունք երկրաչափական ձևերի կատարելության նկատմամբ։ Հունական բնագետները այդպիսի կատարյալ ձևեր էին համարում շրջանագիծը, շրջանը, գնդոլորտն ու գունդը, որոնց միջոցով, ըստ նրանց, պետք է արտահայտվեին տիեզերական բոլոր մարմինների ինչպես տեսքերը, այնպես էլ նրանց շարժումները։

Մենք բոլորս էլ գիտենք և ամեն օր համոզվում ենք, որ երկինքը գնդոլորտի ձև ունի։ Հույն մաթեմատիկոսները համոզված էին, որ դա արդյունք է երկնքի ու նրա բնակիչների՝ երկնային լուսատուների կատարելության։ Իսկ ինչո՞ւ նույնքան կատարյալ չպետք է լիներ մարդու բնակատեղին՝ Երկիր մոլորակը։ Ելնելով կատարելության այս սկզբունքից, պյութագորյան մաթեմատիկական դպրոցի սաներն իրենց մեծ ուսուցչի հետ միասին եկան այն եզրակացության, որ մեր մոլորակը գնդի ձև ունի և առանց որևէ հենարանի անշարժ կախված է Տիեզերքի կենտրոնում։

Ճիշտ է, այս նոր մոդելում ևս Երկիրը շարունակեց պահպանել իր անշարժությունն ու առանձնահատուկ դիրքը տարածության մեջ, որ նրան հատկացրել էին մարդիկ։ Սակայն կարևորը, հատկապես այն ժամանակներում, մեր թվարկությունից 4—5 դար առաջ, նոր պատկերացման առաջացումն էր,

## ՊՏՂՈՄԵՈՍԻ ՀԱՄԱԿԱՐԳԸ




նույնիսկ եթե այն հիմնված էր կատարելության ոչ գիտական սկզբունքի վրա։ Ծնվել էր մի հրաշալի գաղափար, որ վերացական մտածողության ամենաառաջին խոշոր հաղթանակներից մեկն էր։ Շուրջ մեկուկես հազարամյակ մարդկանց մտքերի վրա իշխում էր աշխարհի կառուցվածքի երկրակենտրոն համակարգը, որ ստեղծել էր Ալեքսանդրիայի գրադարանի հայտնի գիտնական Կլավդիոս Պտղոմեոսը մեր թվարկության երկրորդ դարում։ Ձեռք չտալով Երկրին ու նրա սուրբ անշարժությանը, Պտղոմեոսը կարողացավ ստեղծել արհեստական մի ուսմունք, որը գոնե սկզբում բավականին լավ էր նկարագրում լուսատուների շարժումները երկնքում։

Վաղուց ի վեր հայտնի էր, որ երկնքում ամենաակտիվ շարժումներով օժտված են Արեգակն ու Լուսինը, որոնք ծագում ու մայր էին մտնում, ամեն օր մի լրիվ պտույտ կատարելով Երկրի շուրջը։ Նույնպիսի օրական շարժումներ կատարում էին նաև աստղերը։ Բայց ի տարբերություն առաջին երկու լուսատուների, սրանք չէին փոխում իրենց դիրքը միմյանց նկատմամբ։ Այդ հազարավոր աստղերից միայն հինգն էին, որ ժամանակի ընթացքում տեղաշարժվում էին մյուսների նկատմամբ, նրանցից ետ ու առաջ էին ընկնում, ասես կորցրել էին իրենց ճանապարհն ու մոլորվել։ Դրանց այդպես էլ անվանեցին՝ մոլորակներ։

Մոլորակների այս բավականին բարդ ու տարօրինակ շարժումներն էին, որ Պտղոմեոսին թելադրեցին նոր ուսմունք ստեղծել աշխարհի կառուցվածքի մասին։ Տիեզերքի այս նոր մոդելում նույնպես բոլոր շարժումների հիմք էր հանդիսանում շրջանագիծը։ Սակայն, ի տարբերություն իր նախորդների, մոլորակների «տարօրինակությունները» բացատրելու համար նրանց «ստիպեց» մասնակցել կրկնակի շարժումների։ Ինչպես ցույց է տրված նկարում, աշխարհի կառուցվածքի նրա մոդելում մոլորակները պտտվում էին փոքր շրջանագծերով, որոնց կենտրոններն իրենց հերթին պտտվում էին Երկրի շուրջը։ Կրկնակի շարժումներից ազատ էին Արեգակը, Լուսինն ու աստղերը, որոնք միայն Երկրի շուրջն էին պտտվում (նկ. 1)։

Այս ուսմունքը դարձավ հնադարյան աստղագիտության վերջնական արդյունքն ու պսակը, բայց նաև վերջին նվաճումը։ Դրանից հետո մարդկությունը պետական ու քաղաքական մեծ ճգնաժամեր ապրեց։ Նույնպիսի փորձություն բաժին ընկավ նաև գիտությանը։

## ԿՈՊԵՐՆԻԿՈՍԻ ՀԱՄԱԿԱՐԳԻ ՄՈՏԱՎՈՐ ՍԽԵՄԱՆ



Աստղագիտությանը փոխարինելու եկավ աստղագուշակությունը, որ երկար ժամանակով դիրքերը զիջելուց հետո սկսեց բարգավաճել աննախադեպ թափով։ Աստղագիտության և ընդհանրապես գիտության ճգնաժամին նպաստեց նաև Ալեքսանդրիայի Մեծ Գրադարանի կործանումը, որ վերջ դրեց ալեքսանդրյան գիտնականների շքերթին պատմության մեջ...

Իսկ պատմությունը դեռ սպասում էր արմատական փոփոխությունների։ Դրա համար անհրաժեշտ էր մի մարդ, որը գիտնականի խորաթափանցությունից բացի, ունենար նաև տիրապետող ուսմունքի դեմ պայքարելու համարձակություն։ Այդ մարդը ծնվեց Պտղոմեոսից գրեթե մեկուկես հազարամյակ հետո, 1473 թվականին, լեհական փոքրիկ Տորուն քաղաքում։ Դա Նիկոլայ Կոպեռնիկոսն էր, որ աստղագիտությամբ հրապուրվեց, երբ դեռ Կրակովի համալսարանի ուսանող էր։

Կոպեռնիկոսը որոշեց Երկիրը հանել կենտրոնական դիրքից ու փոխարենը Արեգակը տեղավորել այնտեղ։ Սակայն դրա համար հարկ եղավ, որ նա ողջ կյանքը այդ գործին նվիրաբերեր, դիմանար այլախոհների հալածանքներին։ Նա դիմացավ և ստեղծեց արեգակենտրոն համակարգը, որտեղ Երկրի շուրջն էր պտտվում միայն Լուսինը, իսկ Երկիրը մյուս բոլոր «շարքային» մոլորակների հետ միասին պտտվում էր ոչ միայն արևի, այլ նաև սեփական առանցքի շուրջը (նկ. 2)։ Երկրի՝ իր առանցքի շուրջը կատարվող պտույտով բացատրվեցին օրական «շարժումները» երկնքում, ցերեկն ու գիշերը։ Մոլորակների շարժումների մեջ դիտվող «տարօրինակությունները», բանից պարզվեց, պարզ հետևանք են Արեգակի շուրջը Երկրի պտույտին։ Իսկ ինչ վերաբերում է աստղերին, ապա Տիեզերքի կառուցվածքի այս մոդելում նրանք գտնվում են անհամեմատ շատ ավելի մեծ հեռավորությունների վրա, և դրանով էր բացատրվում նրանց անշարժությունը...

Կոպեռնիկոսի տեսությունը ձեռագիր վիճակում պատրաստ էր մոտավորապես 1540 թվականին, երբ նրա հեղինակն արդեն 67 տարեկան էր և հոգևոր լյութերականության կողմից անբարյացակամ վերաբերմունքն էր վայելում։ Իսկ գրքի տպագրությունն սկսվեց երկու տարի անց, և, ինչպես ավանդությունն է պատմում, նրա առաջին օրինակը Կոպեռնիկոսին հասավ 1543 թվականի մայիսի 24-ին, մեծ մտածողի մահվան օրը։ Նա կարողացավ միայն մատներով դիպչել իր ողջ կյանքի նպատակը դարձած աշխատանքի տպագիր օրինակին, բայց այդպես էլ չկարողացավ բացել այն...

**Գիտե՞ք որ...**

## Ալեքսանդրիայի գրադարանը

Ալեքսանդրիայի հռչակավոր գրադարանը հիմնադրվել է մեր թվարկությունից առաջ երրորդ դարի սկզբում, երբ Հունաստանն արդեն զրկվել էր քաղաքական անկախությունից, Աթենքը դադարել էր հին աշխարհի մշակութային ու գիտական կենտրոն լինելուց և նրա տեղն իբրև այդպիսին բարձրացել էր հելլենիստական ամենահզոր պետության՝ Եգիպտոսի մայրաքաղաք Ալեքսանդրիան։

Ալեքսանդրյան գրադարանը հին աշխարհի ոչ միայն ամենախոշոր գրադարանն էր, այլև ընդհանրապես մշակութային ու գիտական ամենախոշոր կենտրոններից էր։ Այն ժամանակների համար գրքերի առասպելական քանակը՝ 700 հազար օրինակ, դեպի գրադարանն էր ձգում հին աշխարհի հռչակավոր գիտնականներին։ Գրադարանի համար ձեռագրերը հավաքում էին ամբողջ հունական աշխարհից։ Գիտնականները քրտնաջան աշխատանք էին տանում, համեմատում և ուղղում ձեռագրերը։ Գրադարանն ուներ մեծ թվով գրիչներ, որոնք արտագրում և բազմացնում էին հատորները։ Մեծ ուշադրություն էր դարձվում տեքստի մշակմանն ու գրքի արտաքին ձևավորմանը։ Բացի հունական գրականության և գիտության ստեղծագործություններից, գրադարանում թարգմանաբար ներկայացված էր նաև արևելյան ժողովուրդների գրականությունը։ Գրադարանային գործը բարձր հիմքերի վրա էր։ Այդ են վկայում Կալիմաքոսի կազմած կատալոգի մեզ հասած պատառիկները։ Այդ բիբլիոգրաֆիական ուղեցույցն ունեցել է գրքերի լրիվ ցանկը՝ ըստ բաժինների ու հեղինակների, համապատասխան ծանոթություններով։

Գրադարանի գոյության առաջին երեք դարերը նրա ծաղկման շրջանն էին։ 47 թ. մ. թ. ա. Կեսարի զորքերի և Ալեքսանդրիայի բնակչության ընդհարման ժամանակ գրադարանը խիստ տուժեց հրդեհից։ Գրադարանին նոր վնաս հասցվեց 273 թ. Ավրելիանոս կայսեր կողմից ժողովրդական ապստամբությունը ճնշելու ժամանակ։ Գրադարանի վերջին մնացորդները կործանվեցին 7—8-րդ դարերում՝ արաբների տիրապետության շրջանում։



# ԵՍ «ԳԵՐԱԶԱՆՑԻԿ» ՉԵՄ

*ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*

Ամեն տարի խոստանում եմ գերազանցիկ դառնալ, խոստանում եմ ոչ դասարանի առաջ, այլ հայրիկիս՝ առանձին, երբ նա հարցնում է, թե ինչպես եմ սկսելու նոր ուսումնական տարին: Հազիվ, ասես վախենալով ինքս էլ լսել իմ խոստումը, շշնջում եմ.

— Լա՛վ...

— Ինչպե՞ս հասկանալ այդ լավը,— խոստումիցս պինդ բռնում է հայրիկը,— գերազա՞նց...

Ու ես տմբտմբացնում եմ գլուխս, որ նշանակում է՝ այո: Իսկ տարեվերջին...

— Հազիվ փոխադրվեցիր, տեսնո՞ւմ ես,— կշտամբող շեշտով ասում է հայրիկը:

Ծույլի պիտակը կպել ու չի պոկվում ինձանից, իմ դասագրքերից, տետրերից, օրագրից...

Ինչպե՞ս դուրս գալ այն օղակից, որ ինքս եմ պատրաստել ինձ համար: Բայց ահա թե ի՞նչ տեղի ունեցավ ուսումնական տարվա առաջին օրերին... Ես ստացա առաջին... առաջին... «հինգը»... Անատոմիայից: Այդ առարկան նոր էինք անցնում, և ինձ հետաքրքիր թվաց: Մինչ այդ «ծույլ» պիտակը ինձ համոզել էր, որ ես բոլորովին տարօրինակ մի էակ եմ, որի ուղեղը, ինչպես հայրս էր ասում, դեռևս ջուր է, ականջները, ինչպես մեր դասղեկ ընկեր Ասատրյանն էր ասում, միջանցիկ է և դա ապացուցված էր նրանով, որ իր բացատրած դասը ձախ ականջիցս մտնում էր, աջից դուրս գալիս: Իսկ երեսս, ըստ տատիկի՝ իսկական կոշիկի ներբան է, քանի որ ամոթ ու պատկառանք ասածը չունեմ, մեծ քույրս ու եղբայրս նույն դպրոցում, նույն ուսուցիչների մոտ գերազանց են սովորել, իսկ ես...

Այսպես, ուրեմն, ստացա առաջին «հինգը», և այն պահին, երբ ընկեր Եղիազարյանը օրագրիս մեջ դրոշմում էր այն, ավելի ճիշտ՝ որմնադրի նման հաստատուն տեղադրում, ինչպես շենքի առաջին քարը, ինձ թվաց, թե գերազանցիկ լինելուց հեշտ բան չկա:

Այդ օրը դասամիջոցին Ռուբիկն ու Մանվելը մարտահրավեր նետող տեսքով ցցվեցին իմ առաջ, կարծես իրենք էին մեր դասարանի գերազանցիկները և ես նրանց հետ էի մրցելու: Ռուբիկը ծաղրաբար հարցրեց.

— Որոշել ես գերազանցի՞կ դառնալ:

— Իսկական գերազանցի՞կ,— ծոր տվեց Մանվելը և ձգվեց զինվորի պես, այսինքն՝ գերազանցիկներն այդպիսին են:

— Որոշել եմ, ի՞նչ կա որ,— բռունցքներս ակամա սեղմեցի ես:

— Դե ոչինչ,— իբրև թե անտարբեր ասաց Ռուբիկը:— Զգուշացնում եմ, որ աղջիկները կսիրահարվեն քեզ..

— Եվ դու էլ,— ձգված դիրքից միանգամից փլվեց ու կուչ եկավ Մանվելը,— ա՜յ այսպես, գլուխդ կկորցնես ու նորից... «երկուսների» բեռից կճըկռես...

Ես ավելի շատ հենց դրանից չարացա, քանի որ իսկապես, մեր դասարանի Անահիտը, որ գերազանցիկների գերազանցիկն է և գեղեցկուհիների գեղեցկուհին, այն պահին, երբ օրագիրը ձեռքիս տեղս վերադարձա, շշընջաց.

— Շնորհավորում եմ...

Հաջորդ դասին, երբ ընկեր Եղիազարյանը հարցական նայեց դասարանին, իմանալու, թե ո՞վ է հասկացել դժվար թեման, Ռուբիկը հեգնախառը շշնջաց.

—«Գերազանցիկը»...

Այդ օրվանից անունս մնաց «գերազանցիկ»:

Ավարտվեց առաջին քառորդը, և ես «գերազանցիկ» մնացի միայն մի «հինգ» գնահատականով: Իմ միակ «հինգն» օրագրիս մեջ թանգարանային նմուշ էր դարձել: Անատոմիայից թեկուզ «չորս» ստանալ չէր հաջողվում, քանի որ նյութը գնալով բարդանում էր: Ես էլ տեսնելով, որ բան դուրս չի գալիս, ինձ շատ էլ չէի կոտրում: Հայրիկն ու մայրիկն էլ ձեռքները թափ տվին: Իսկ տատիկը եզրակացրեց, որ ինձանից «Պողոս-Պետրոս» դուրս չի գա:

Եթե բոլորը հաշտվել էին վիճակիս հետ, ես ինչո՞ւ ինձ տանջեի: Կարճ ասած, ես ընտելացել էի ծաղրով ինձ տրված «գերազանցիկ» անունս մինչև տարեվերջ քարշ տալու հետ:

Մի անգամ ընկեր Եղիազարյանը հիվանդացավ և նրան փոխարինելու եկավ ընկեր Բաքայանը:

— Ո՞վ է ցանկանում դասը պատասխանել,— ներս մտնելուն պես սկսեց նա:

Մի քանի վայրկյան ոչ ոք չէր համարձակվում ձեռք բարձրացնել: Ընկեր Բաքայանը համբերությամբ սպասում էր: Վերջապես Անահիտը, Կարենն ու Գևորգը ձեռք բարձրացրեցին: Ես թեթևացած շունչ քաշեցի:

— Ուրիշ ո՞վ կարող է պատասխանել,— ժպտալով դասարանին դիմեց ընկեր Բաքայանը:

Ռուբիկը թե.

— «Գերազանցիկը»...

— Գերազանցի՞կը... ո՞վ է ձեր դասարանի գերազանցիկը,— նրան մոտեցավ ընկեր Բաքայանը:

Ասես բոլորը խոսքները մեկ արած՝ շրջվեցին ու ինձ նայեցին, բայց այս անգամ զարմանալիորեն ոչ ոք չծիծաղեց: Ընկեր Բաքայանը մոտեցավ, կանգնեց կողքիս: Ես վեր կացա, կախեցի գլուխս: Ա՜յ քեզ ձախորդություն: Ընկեր Բաքայանը ինձ էր սպասում, ինձ էր սպասում ամբողջ դասարանը: Հիմա ի՞նչ էր լինելու...

— Ես գերազանցիկ չեմ,— քրթմընջացի և զգացի, թե ինչպես դասարանը թեթևացած շունչ քաշեց:

Եվ զգացի, որ այստեղ ինչ-որ բան ավարտվեց, զգացի, որ ինչպես էլ լինի, դուրս պետք է գամ այն անիծված օղակից, որի մեջ մտել եմ կամովին, որպեսզի «գերազանցիկ» ծաղրական անունը պոկվի ինձանից:

**ПИОНЕР**-ից

## ԿՈՐՑՆԵԼ ԳԻՐՔԸ, ԱՅՆ ԷԼ ՈՒՐԻՇԻ՞...

Տանը մենք բավական հարուստ գրադարան ունենք: Ծնողներս տարիների ընթացքում գրքեր են գնել, ինչպես նաև բաժանորդագրվել են: Այդ գրքերը կարդում ենք բոլորս՝ ես, իմ համադասարանցիները, իմ բարեկամները. ծնողներս թույլատրում են վերցնել ուզածդ գիրքը:

Մի անգամ ծանոթ մի աղջիկ մեզնից գիրք վերցրեց: Մեկ ամիս անց նա հայտարարեց, թե գիրքը կորցրել է: Ես շատ վշտացա, բայց որոշեցի ծնողներիս առայժմ ոչինչ չասել՝ գուցե գիրքը դեռ կգտնվի: Մի ամիս էլ անցավ, ծանոթ աղջիկը գրքի մասին նույնիսկ մոռացել է, իսկ ես լռում եմ, չեմ համարձակվում կորստի մասին տանը խոսել: Վախենում եմ ծնողներս իմ ընկերներին այլևս գրքեր չտան կարդալու:

Նույնիսկ չեմ պատկերացնում, թե ինչպե՞ս կարելի է գիրքը կորցնել, այն էլ՝ ուրիշինը:

ՏԱՆՅԱ ՍՈՍՆՈՎՍԿԱՅԱ
*Տաշքենդի մարզ, ք. Ալմալըկ*

## ԻՆՉՊԵ՞Ս ՆՐԱՆՑ ԲԱՑԱՏՐԵՍ

Ես ընկերություն եմ անում համադասարանցի մի աղջկա՝ Իրայի հետ: Դրա համար դասարանում մեզ վրա ծիծաղում են: Սկզբում ես դրանից նեղվում էի, հետո սկսեցի ուղղակի ուշադրություն չդարձնել: Ինչո՞ւ ես չեմ կարող բարեկամություն անել և՛ տղաների հետ, և՛ Իրայի հետ:

ՎՈԼՈԴՅԱ ԴՈՎԳՅԱՄ
*Կարելական ԱՍՍՀ, ք. Մեդվեժեգորսկ*

## Ա՜Խ, ԱՅԴ ՌԵԺԻՄԸ

Երբ զարթուցիչը զրնգաց, առաջին մտածմունքս եղավ՝ մի քիչ էլ քնել: Եվ ես աչքերս փակեցի: Ժամը ութին վեր թռա անկողնուց, նայեցի օրվա ռեժիմը: Ռեժիմի առաջին կետը լիցքային վարժություններն էին: Վարժությունները կատարելու ժամանակ չմնաց: Արագ նախաճաշեցի և սլացա դպրոց, ճանապարհին կրծելով ձեռքիս խնձորը: Բնությամբ հիանալու ժամանակ նույնպես չմնաց:

Դպրոցից հետո էլի՛ փորձեցի հետևվել ռեժիմին: Ճաշից հետո նոր էի սկսել բնակարանը հավաքել, երբ ձեռքըս գիրք ընկավ: Եվ... ավելը գետին նետելով, սկսեցի կարդալ:

Օրվա մնացած մասը ուղղակի թռավ: Ժամը ութին նստեցի դասերս պատրաստելու: Գիրքը բացեցի, գրիչը ձեռքս վերցրի...

— Գեղարվեստական կինոնկար՝ «Տառապանքի ուղիներով», երրորդ սերիա,— հայտարարեց դիկտորը ծնողներիս սենյակում: Հեռուստացույցը մագնիսի պես ինձ ձգեց: Արիաբար դիմադրում էի, մինչև նկատեցի, որ իմ բոլոր ջանքերն ուղղված են ինքս իմ դեմ պայքարելուն և ոչ թե դասերս պատրաստելուն:

— Միևնույն է, ոչինչ չեմ կարողանա անել,— վճռեցի, և անիծելով իմ թույլ բնավորությունն ու անկազմակերպվածությունը, գնացի ֆիլմը դիտելու:

Ժամը տասներկուսին վերջացրի դասերս: Քնելիս մտածում էի. «Վաղը վեր կկենամ ժամը յոթին, լիցքային վարժություններ կկատարեմ...» Սովորական դարձած ամենօրյա մտքեր՝ քնից առաջ:

ՆԱՏԱՇԱ ՏՈՄՆԱՋԵՎԱ
*ք. Գորնո—Ալթայսկ*
*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*

# ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ ՏՊԱԳՐՎԱԾԻՆ

«Վատ»՝ հայոց լեզվից

## ՄԵՆՔ ՊԱՐՏԱՎՈՐ ԵՆՔ ՄԱՔՈՒՐ ԽՈՍԵԼ

Մի անգամ աշակերտներից մեկը Համլիկից գրիչ ուզեց: Համլիկը սիրով կատարեց նրա խնդրանքը: Այդ աշակերտը գրիչը վերադարձնելով, ասաց.

— Մերսի (վերջերս այդ օտար բառը մեզ մոտ շատ է օգտագործվում):

— Մի՞թե չես կարող հայերեն խոսել,— ընդհատեց Համլիկը,— չէ՞ որ մենք՝ հայերս, մի գեղեցիկ բառ ունենք:

— Շնորհակալություն,— հասկանալով Համլիկին, իր սխալը ուղղեց նա:

Դպրոցում կազմակերպվել էր հեռավոր էքսկուրսիա դեպի Մոսկվա: Այդ էքսկուրսիային մասնակցում էին մեր դասարանից մի քանիսը: Վերադարձի օրը անհամբեր սպասում էինք նրանց: Հենց այդ ժամանակ էլ տեղի ունեցավ հետևյալ խոսակցությունը.

— Տեսնես ինչո՞ւ ուշացան, ժամը 2-ին պետք է այստեղ լինեին,— հարցրեց մեզանից մեկը:

— Պոեզդը ապազդանի է տվել,— պատասխանեց մի ուրիշը:

Մենք ստիպեցինք նրան ուղղել իր սխալը: Սկզբում չէր ուզում համաձայնել, ասելով.

— Ձեզ ի՞նչ, ես չե՞մ խոսողը:

Շատ ստիպելուց հետո, նա զգաց իր սխալը և ուղղեց.

— Գնացքը ուշացումով է գալիս:

Մենք ահա այսպես ենք պայքարում լեզվի աղավաղումների դեմ և հասնում ենք արդյունքի:

*ԽՈՐՁԱՆՆԱ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

*Էջմիածնի շրջ., գ. Արշալույս, 8-րդ դաս.*

«Անհաջողություն դասարանում...

Ինչո՞ւ»

## ՄԵՆՔ ՆՈՒՅՆՊԵՍ ՄԵՂԱՎՈՐ ԷԻՆՔ

Այդ հարցը մեզ նույնպես հուզել է: Մինչև վերջերս մեր դասարանում աղջիկներն ու տղաները հաճախ էին վինում: Անհաշտության հիմնական պատճառն այն էր, որ տղաները դասերից փախչում էին, իսկ մենք դա չէինք թաքցնում ուսուցիչներից և դասղեկից: Բացի այդ մեզ՝ աղջիկներիս թվում էր, թե մեր դասարանի տղաները վատն են, իսկ մյուս դասարաններինը և՛ խելոք են, և՛ քաղաքավարի, և՛ լրջմիտ: Սակայն նույն տրտունջները լսեցինք նաև մյուս դասարանների աղջիկներից: Դրանից հետո այդ վատ երևույթի համար փորձեցինք մեղադրել ինքներս մեզ, և պարզվեց, որ տղաները մեր դեմ լարվում էին ոչ այնքան իրենց փախչելու մասին դասղեկին տեղյակ պահելու, որքան այդ ասելու տոնի համար: Չենք թաքցնում, մենք այդ անում էինք մի անսքող թշնամությամբ, և ոչ թե ընկերական փոխօգնության անկեղծ ձգտումով: Այժմ մենք լավերին փնտրում ենք ոչ թե այլ դասարաններում, այլ՝ մեր կողքին: Ճիշտ է, նրանց չի կարելի իդեալական ընկերներ, առավել ևս՝ աշակերտներ համարել, բայց հաշտության, համերաշխության, իրար հասկանալու հարցում, ինչ-որ չափով, ինչ-որ բանի հասել ենք:

*ԼԻԴԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

*Վարդենիսի № 2 դպր., 10-րդ դաս.*





## «ՀԱՍԿԵՐ» ԵՎ «ԼՈՒՍԱԲԵՐ»

Առաջինը մանկական ամսագրի անունն է, երկրորդը՝ հայոց լեզվի դասագրքի։ Գրքերը լույս են տեսել մինչև հեղափոխությունը՝ սկսած 1907 թվականից։ Ե՛վ ամսագիրը, և՛ դասագիրքը կապված են նշանավոր մանկավարժ ու հրատարակիչ Ստեփան Լիսիցյանի անվան հետ։ Նա շատ ջանք է թափել երեխաներին լավ կրթություն տալու, նրանց մեջ մայրենի լեզվի ու գրականության սեր զարթնեցնելու համար, այդ նպատակին նվիրելով իր ամբողջ կյանքը։

Լիսիցյանը գիտեր, որ մանկական ամսագիր և լեզվի դասագիրք չի կարելի ստեղծել առանց ամենալավ գրողներին ու նկարիչներին իր շուրջը համախմբելու։ Ամենից առաջ և ամենից շատ նա գործի մեջ ներգրավել է Հովհաննես Թումանյանին։

Իր հրաշալի գրվածքներից շատերը՝ ինչպես «Անբա՜ն Հուռին», «Սուտլիկ որսկանը», «Հսկան», «Ոսկի քաղաքը», «Առաջին ձյունը», «Հովվի հըրաժեշտը», «Միտիկի օրորքը» և այլն, Թումանյանը գրել կամ փոխադրել է «Հասկերի» ու «Լուսաբերի» համար և առաջին անգամ նրանց մեջ է տպագրել։

«Լուսաբեր» դասագրքի հեղինակներն են Ստեփան Լիսիցյանը, Լեոն Շանթը և Հովհաննես Թումանյանը՝ նկարիչ Վրթանես Ախիկյանի հետ միասին։ Առաջինից մինչև հինգերորդ դասարանների համար ստեղծված այդ դասագրքերն ամեն տարի վերահրատարակվում էին բարեփոխված, լույս են տեսել նաև արևմտահայերեն, և շատ կարևոր դեր են կատարել հայ երեխաների կրթության գործում։

«Լուսաբերի» և «Հասկերի» շատ էջեր այսօր էլ պահպանում են իրենց գրավչությունը, այսօր էլ կարող են գեղագիտական բավականություն պատճառել և ժպիտ պարգևել ընթերցողներին։ Ուստի և մեր ամսագրի էջերում այսուհետև տեղ կտանք «Լուսաբերից» քաղված ընտիր գրվածքներին։

### «ԼՈՒՍԱԲԵՐ»-ից

## Խելոք գլուխը

Բերանն ասավ.

— Ես ամեն ինչ կուտեմ, կխմեմ։

Գլուխն ասավ.

— Հը՜մ...

Լեզուն ասավ.

— Ես ինչ ուզենամ՝ կասեմ, կխոսեմ։

Գլուխն ասավ.

— Հը՜մ...

Ձեռքերն ասին.

— Մենք ամեն ինչ կշինենք, կքանդենք։

Գլուխն ասավ.

— Հը՜մ...

Բերանն ու լեզուն, ձեռքերն ու ոտներն ասին գլխին.

— Ինչո՞ւ ես «հը՜մ» անում։

Գլուխը պատասխանեց.

— Ինչ անեք-չանեք՝ առաջ ինձ պիտի հարցնեք։

Ոտներն ու ձեռները կուչ եկան, բերանը մնաց բաց, իսկ լեզուն կակազելով ասավ.

— Հա՜... ըղղորդ է ասում, գըգըլուլուխը...

# ԱՐՁԱԳԱՆՔ

Փոքրիկ Արտաշեսը շվշվացնելով գնում էր ձորով: Հանկարծ լսեց, որ մի ուրիշն էլ է շվացնում: Հենց իմացավ՝ ընկերն է, կանգնեց, ձայն տվավ.

— Վահա՛ն, դո՞ւ ես:

— Ես...

— Ա՛տա, մեր հորթը ուր գնաց, տեսա՞ր:

— Սա՛ր...

— Հանա՞ք ես անում, ի՞նչ է:

— Չէ՛...

— Վա՜յ, էդ հո գելը կուտի՛:

— Ուտի՛...

Արտաշեսը լալով վազեց տուն. տեսավ՝ հորթն էլ է տանը, Վահանն էլ:





# Պարոն գլխարկը

— Ես էլ արդեն պարոն եմ,— ասավ Գարեգինը: Դրավ Գասպար պապիկի լայն գլխարկը ու գնաց դուրս:

Դեմը ելավ Գասպար պապիկը և ասավ.

— Պարոն գլխարկ, պարոն գլխարկ, էդ ո՞ւր ես տանում իմ պստիկին:



# ՓՈԽԱՐԻՆՈՂԸ

ՎԱՀԱՆ ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Անտառապահը վերցրեց անկյունին հենած հրացանը, ստուգեց՝ մեջը երկու փամփուշտ կար: Տասնվեց տրամաչափի հրացան էր: Հանեց փամփուշտները, առավոտն էր դրել, երկուսն էլ չորս համարի մանրագնդակ էր, ծտերի համար, այն ծտերի, որ առավոտյան բադի ու բեկասի կերպարանքով թռչում էին եղեգնուտից... և ինքը չկրակեց: Նա բոլոր թռչուններին սկզբնապես ծիտ էր անվանում: Իսկ փամփուշտները դրել էր ինքնապաշտպանության համար, ծտերի՞ց... բայց հազվադեպ էր կրակում: Դե հո դատարկ հրացանը ման չե՞ս տա, իսկ առանց փամփուշտի ինքդ ես դատարկ շրջում... Հիմա օրը դեպի երեկո թեքվեց և նա դուրս քաշեց երկու մանրագնդակը, տեղը մի կարտեչ ու մի ժական դնելով՝ փակեց հրացանը: Մի քանի փամփուշտ էլ շալվարի գրպանը գցեց ու դուրս եկավ տնակից: Մայրամուտին դեռ մի չորս ժամ էլ կար, բայց երեկոյան տրամադրություն էր անտառում: Ամառ էր, ուշ էր մթնում:

Շունը քնածի տեսք ուներ:

— Աչքս լույս,— ասաց նա շանը,— ես քնում եմ, դու էլ ես քնում, բա ո՞վ հսկի, հը՞...

Շունը ծռեց բրդոտ գլուխը, պտտեցրեց կտրած ականջներն ու չհասկացած, հաչեց:

— Գնացի՛նք...

Իջան լճափ, լվացվեցին, ապա քայլեցին լճափի երկայնքով: Այստեղ էին ջուր խմող կենդանիների հետքերը: Անտառում, օրվա դեպքերն ամենից շատ այս լճափին էին գրանցվում, ավազի վրա: Բայց երեկոյան ջրարբուքը դեռ առջևում էր: Հիմա ինքը դեռ ժամանակ ուներ, կքայլեր, ոչ մի ջուր խմողի չէր վախեցնի իր հրացանով, շնով, իր կես-անտառային տեսքով:

— Տո՛ւն գնա,— ասաց շանը, և շունը վազեց տուն:

Անտառապահը մեկ ուզեց նավակ նստել, բայց ծուլացավ ջուրը դատարկել, թիավարել, շարունակեց քայլել ափով, հասավ մեծ, ծուռ ստճուն, ձեռքը տարավ վիթխարի փչակը, ընկույզները տեղում էին: Ո՞վ պիտի ձեռք տար, թող չորանան:

Միահոտ կպավ քթին: Ի՞նչ բան է...
Արագացրեց քայլը և հանկարծ կանգ առավ: Ափի ավազին, կես մետր ջրից հեռու, երկու մարդ էին ընկած: Նրանք լողազգեստներով էին, անշարժ... Անտառապահն արագ ետ քաշվեց ու թաքնվեց թփերի մեջ: Շուրջը նայեց՝ ոչ ոք չկար: Աչքն ընկավ խաբուլկին, որ փլված, տրորված էր, ասես մեկը դիտմամբ ցրել էր, որ ծուխ չլինի: Խաբուլկից քիչ հեռու նկատեց երկու մեծ ուսապարկ, հետո խոտերի մեջ երկու հրացան և մի դատարկ օղու շիշ: Քիչ այն կողմ էլ նկատեց շորերը...

— Քնած են,— հանգստացած շունչ քաշեց անտառապահն ու իջեցրեց հրացանը,— հե՜յ,— կանչեց:

Երկու մարդ դանդաղ, արևից, քնից շշմած՝ բարձրացրին գլուխներն ու ապշած նայեցին ծերունուն, նրա հրացանին, որն ուղղված էր իրենց:

— Ո՞վ եք:

Մարդիկ հերթով նստեցին տեղում, սկսեցին ձգվել ու հորանջել:

— Էս ի՞նչ է, քնե՞լ էինք,— ծիծաղեց պատանին: Նրա դեմքին հիացմունք կար: Նա լողացել էր լճում ու քնել ավազի վրա, կիսամերկ: Նա զգում էր, որ վերջապես լրիվ ձուլվել է բնությանը:

— Ի՞նչ եք անում էստեղ,— հարցրեց անտառապահը:

— Հանգստանում ենք,— ասաց ավելի տարիքոտը:

— Հո որս չե՞ք արել:

— Արել ենք,— ասաց մեծը:

— Ի՞նչ որս,— զարմացավ անտառապահը, որ խոստովանեցին:

— Ձուկ:

— Ինչո՞վ:

Մեծը գլխով ցույց տվեց կարթերը:

— Հա՜,— ձգվեց անտառապահը,— բա հրացա՞նն ինչի համար է:

— Ա՜յ մարդ,— բացականչեց մեծը,— մենք հո հենց էս արգելանոցո՞ւմ մնալու չենք եկել: Ա՜յ, էն մութ սարը տեսնո՞ւմ ես:

— Հա՜:

— Մենք դրա մյուս կողմն ենք գընում: Բա՜:

— Բա՜,— ասաց պատանին հրաշքի գիտակցությամբ:

— Ինչի՞ եք գնում:

— Դա արդեն մեր գործն է: Դա արգելանոցի սահմանից դուրս է:

— Իրավունք չունեք հրացանով արգելանոց մտնել:

— Ո՞նց թե: Հրացանի իրավունքը գրքույկի մեջ է: Հեն է գրքույկը: Ինքնապաշտպանության նպատակով հրացան կրելու իրավունք ունենք: Կրակոց սե՞լ ես, անօրինական որս բռնե՞լ ես: Չէ: Վերջացավ:

— Ճիշտ է,— նույն տոնով հասատեց անտառապահն ու նստեց,— բա կրա՞կը:

— Հանգցրել ենք,— ասաց պատանին, որ երևի ինքն էր հանգցրել:

Անտառապահը նայեց պատանուն: Ինչ-որ ծանոթ ու հարազատ բան կար նրա դեմքի վրա, թեև երբեք չէր տեսել այդ տղային:

— Հագնվեցե՛ք, շուտով կցրտի,— ասաց ծերունին:

Նրանք հագնվեցին: Հագուստից անտառապահը գլխի ընկավ...

— Հա՞, երկրաբան եք.

Երկուսն իրար նայեցին ու ծիծաղեցին:

— Գնանք տուն,— ասաց անտառապահը:

— Չէ՛, հայրի՛կ,— ասաց մեծը:— Մինչև մութն ընկնելը սարի տակը պիտի հասնենք:

— Բա որտե՞ղ եք քնելու:

Պատանին հիացմունքով ցույց տվեց ուսապարկին կապած վրանը:

— Հա՛, չմոռանամ, ժամը չե՞ք ասի,— հարցրեց ծերունին,— ժամացույցս կանգնել է: Մեկի վրա:

— Հինգ անց կես,— ասաց մեծը:

Ծերունին գրպանից թուղթ-մատիտ հանեց և խնամքով գրեց ժամը: Մեծը զարմանքով նայեց նրան, ապա՝ պատանուն, բայց վերջինս հիացած լճին էր նայում: Անտառապահն էլ նկատեց այդ հայացքն ու շրջվեց լճի կողմը: Մի անհասկանալի տագնապ էր, ինչ էր, սողոսկեց ներս: Եվ հանկարծ պատանին հարցրեց.

— Քանի՞ տարեկան ես, հայրի՛կ:

Ծերունին ծխախոտ վառեց.

— Յոթանասունից էն կողմ քանի չկա,— ասաց նա:

— Դե լավ, գնացինք,— ասաց մեծն ու շալակեց ուսապարկը,— մնաս բարո՜վ, հայրի՛կ:

Պատանին էլ շալակեց ուսապարկը, վերցրեց հրացանը մի տեսակ հանդուգ մով:

— Մնաս բարո՜վ, հայրի՛կ:

— Տունս էնտեղ է,— մատով ցույց տվեց ծերունին:

— Մյուս անգամ,— ասաց մեծը:

— Կգաք, հա՞,— ասաց ծերունին:

— Անպայմա՛ն,— ասաց պատանին, և մեծը զարմանքով նայեց նրան:

— Հաջողություն,— ասաց ծերունին:

Երկուսը ճանապարհ ընկան ու քիչ անց կորան անտառապատ բլրի ետևում: Ծերունին մի ժամ էլ շրջեց ու վերադարձավ տուն: Անտառը մի տեսակ դատարկ էր, թե հանդարտվել էր ոչ այն է տաք ոչ այն է սառը եղանակից: Տան առաջ հուզված ցատկոտում էր շունը: Ծերունին հասկացավ, որ նա էլ է տեսել օտարներին:

Ժամացույցը կանգնած էր մեկի վրա: Ծերունին գրպանից հանեց թուղթն ու խնամքով ուղղեց ժամացույցը՝ հինգ անց կես: Թավայի մեջ միս տապակեց, կերավ, վրայից թեյ խմեց: Նրա ոտքերի մոտ, գաղյամորթու վրա պառկել էր շունը:

Այդ ժամանակ լնռան ստորոտում երկուսը վրան էին խփում:

Մթնեց: Անձրևն սկսեց մանր թմբկահարել վրանի տանիքը: Մեծը վառեց մոմը, և ստվերները պարեցին արծաթագույն վրանի մեջ: Վրանի տանիքը փողփողաց քամուց: Պատանին մտավ քնապարկի մեջ ու կիսով չափ քաշեց շղթան: Ձեռքերը դրեց գլխատակին ու մոծակին նայեց, որ հանդարտ թռչում էր առաստաղի անկյունում: Մեծն էլ մտավ քնապարկի մեջ ու մի ծխախոտ վառեց, պահածոյի տուփը հարմարեցրեց մոմի տակ և վրան մոխիրը թափ տվեց:

— Այդ ծերունուց հետո ես կգամ անտառապահ,— ասաց պատանին:

Մեծը ժպտաց: Հետո նայեց նրան, բայց պատանին արդեն քնել էր:

Անձրևն ավելի ուժեղացավ:

Ամպրոպը դադարել էր:

*Մեր հյուրը*

# ՅՈՒՐԻԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ

## *Շիրակցի դյուցազնը*

Վերջին երեք տարիներին լենինականցի Յուրիկ Վարդանյանը փառավոր նվաճումներ է ունենում աշխարհի, Եվրոպայի, ՍՍՀՄ առաջնություններում, գավաթի և միջազգային մրցումներում: Նա մեկը մյուսի ետևից գահընկեց արեց կիսամիջին, ապա միջին քաշային կարգերում եղած նախորդ համաշխարհային ռեկորդները, նվաճեց ՍՍՀՄ, Եվրոպայի և աշխարհի չեմպիոնի կոչումները:

Նույնքան տպավորիչ էին Յուրիկի ելույթները նաև ՍՍՀՄ ժողովուրդների 7-րդ սպարտակիադայում: Պոկում վարժությունում նա ցույց տվեց 175.5 կիլոգրամ արդյունք, որը 0.5 կիլոգրամով գերազանցում էր բուլղար ծանրորդ և Վարդանյանի միակ մրցակից Բլագոևի համաշխարհային ռեկորդը: Սակայն, ինչպես ասում են, դա միայն սկիզբն էր: Հրում վարժությունում նա համաշխարհային ռեկորդը բարելավեց երկու անգամ, նախ բարձրացնելով 213, իսկ վերջին մոտեցման ժամանակ 215 կիլոգրամ: Երկամարտի գումարով Յուրիկի ցույց տված արդյունքը՝ 387.5, իսկ ապա նաև 390 կիլոգրամ, նույնպես աշխարհի նոր ռեկորդներ էին:

Համաշխարհային հինգ ռեկորդ մի երեկոյի ընթացքում, որից չորսը սահմանվեցին վերջին 4 րոպեում: Հայ դյուցազնը իրավամբ համարվեց ՍՍՀՄ ժողովուրդների 7-րդ սպարտակիադայի հերոս: Յուրիկ Վարդանյանի մասին ծանրամարտի միջազգային ֆեդերացիայի պրեզիդենտ Գոտֆրիդ Շեդլը (Ավստրիա) ասաց. «Մի քանի տարի առաջ իմ կուռքը Վասիլի Ալեքսեևն էր: Ավելի ուշ՝ Դավիթ Ռիգերտը, իսկ այժմ, իհարկե, Յուրիկ Վարդանյանը... Իմ պատկերացմամբ, իդեալական ծանրորդը աչքի է ընկնում երեք հատկությամբ՝ տեխնիկայով, ուժով, խելքով: Այդ ամենն ունի ձեր ռեկորդակիրը, որը նաև շատ բազմակողմանի ու հմայիչ մարդ է»:

Իսկ սոցիալիստական աշխատանքի հերոս, բանաստեղծ, պետական մրցանակի դափնեկիր Միխայիլ Դուդինը ավելացրեց. «Յուրիկ Վարդանյանի ելույթները, որոնք անջնջելի տպավորություն թողեցին ինձ վրա, նաև գեղագիտական երանգ ունեն. դրանք դրսևորվում են ներդաշնակ զարգացած մարդու, երիտասարդ դյուցազնի ուժն ու գեղեցկությունը»:

*Լուսանկարը՝ ՀՈՒԲԵՐՏ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ*




## ԴՊՐՈՑՆ ԱՌԱՆՑ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐԻ, ԻՍԿ ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐՆ ԱՌԱՆՑ ԱՇԽԱՏԱՆՔԻ

Այս ցույցը տեղի ունեցավ արևմտագերմանական Գելզենկիրխեն քաղաքում: Ցուցարարները տանում էին «Չըկա մեկը, որ սովորեցնի երեխաներին», «Դպրոցականներն ուսուցիչներ են փնտրում», «Ուսուցիչնե՛ր տվեք մեզ» մակագրություններով ցուցապաստառներ:

Միևնույն ժամանակ, նույն այդ քաղաքի աշխատանքային բիրժայում գըրանցված են 130 գործազուրկ ուսուցիչներ:

— Ինչո՞ւ է այդպես,— կհարցնեք դուք:

Բանն այն է, որ ԳՖՀ-ի կառավարությունը տարեցտարի կրճատում է լուսավորության ծախսերը և դպրոցները չեն կարողանում այնքան ուսուցիչ հրավիրել աշխատանքի, ինչքան անհրաժեշտ է:

Նման ցույցեր են անցկացվել ԳՖՀ-ի բազմաթիվ քաղաքներում:

# Ջրաղացպանի

(Հունգարական ժողովրդական հեքիաթ)

Կար չկար մի ջրաղացպան: Նա մի աղջիկ ուներ, այնքա՜ն խելացի, այնքա՜ն խելացի, խելքի ծով: Սրա համբավը գնացել հասել էր նույնիսկ հարևան երկրները:

Թագավորը նույնպես լսեց ջրաղացպանի աղջկա մասին, իր ծառային նրա մոտ ուղարկեց և հրամայեց ասել, որ թագավորի տանիքում արդեն հարյուր տարի է, ինչ մի կնապ վուշ կա ընկած, եկ և դրանից, եթե կարող ես, ոսկի թել մանիր:

Ջրաղացպանի աղջիկը լսեց թագավորի ծառային և խնդրեց հաղորդել թագավորին, որ իր հոր դուռը հարյուր տարի է, ինչ պատած-պարապապատած է, թե որ թագավորը դրանից ոսկե իլիկ պատրաստի, ինքն էլ այդ ոսկե իլիկով ոսկի թել կմանի թագավորի հարյուր տարվա վուշից: Թագավորը հո չի՞ կարող թույլ տալ, որ ջրաղացպանի աղջիկը թագավորի համար ոսկի թել մանի փայտե հասարակ իլիկով:

Թագավորին ջրաղացպանի աղջկա պատասխանը դուր եկավ: Նա իր ծառային երկրորդ անգամ ուղարկեց ջրա-

# Ա՜Խ, ԱՐՏԱ՛Շ, ԱՐՏԱ՛Շ...

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

— Արտա՛շ, ա՜յ Արտաշ,
Մի բաժակ ջուր տա՛ս:
— Տատի՛, որ ջուր տամ,
Մուրաբա կտա՞ս:

# աղջիկը



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

ղացպանի աղջկա մոտ և հրամայեց ասել նրան, որ թագավորն իր տանի-քում մի ծակ կուժ ունի, եթե կարող է, թող ջրաղացպանի աղջիկը գա և այդ ծակ կուժը կարկատի:

Ջրաղացպանի աղջիկը հիմա էլ այս պատասխանն ուղարկեց թագավորին. ձեռք պետք է քաշել այդ կժից, եթե դա բանի պետք լիներ, տանից չէր նետվի, լաված բան չէ, որ անպետք իրը տանիքից ետ բերվի ու նորոգվի:

Այս պատասխանն ավելի դուր եկավ թագավորին: Նա իր ծառային երրորդ անգամ ուղարկեց ջրաղացպանի աղ-ջըկա մոտ և հրամայեց ասել նրան, որ թող նա իր ոտով թագավորի պալատը գա, բայց և՛ չգա, բարևի թագավորին, բայց և՛ չբարևի, նվեր տա, բայց և՛ չտա:

Ջրաղացպանի աղջիկը բռնեց մի աղավնի, դրեց մաղի մեջ, երկրորդ մաղով ծածկեց առաջին մաղի բերանը, առավ թևի տակ, նստեց ավանակի վրա, հասավ թագավորի պալատը, գլուխ տվեց թագավորին, ապա վերևի մաղը բարձրացրեց, աղավնին մաղից դուրս ելավ ու թռավ գնաց...

Ահա և ստացվեց, որ ջրաղացպանի աղջիկը իր ոտով եկավ, բայց և՛ իր ոտով չեկավ: Բարևեց թագավորին, բայց և՛ չբարևեց: Նվեր տվեց նրան, բայց և՛ չտվեց:

Թագավորին ջրաղացպանի աղջիկն այնքան դուր եկավ, որ տեղնուտեղը որոշեց ամուսնանալ նրա հետ:

— Ակնոցս կորավ,
Արտա՛շ, մի գտնե՛ս:
— Տատի՛, որ գտնեմ,
Մամոն կգնե՞ս:
— Ջեռնափայտս բե՛ր,
Խանութ գնամ ես:
— Որ փայտդ բերեմ,
Ինձ ի՞նչ կբերես...

— Ա՜խ, Արտա՛շ, Արտա՛շ,—
Բարկացավ տատը
Ու թոռան վրա
Թափ տվեց մատը,—
Այդ ինչպե՞ս է, որ
Պապդ ալևոր,
Ես, հայրդ, մայրդ,
Ամբողջ աշխարհը,

Ստեղծել ենք քեզ
համար ամեն ինչ
Եվ քեզանից դեռ
Չենք ուզել ոչինչ:
Իսկ դու քո արած-
Չարածի դիմաց՝
Վարձ ես պահանջում:
Բա չե՞ս ամաչում...

## ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԸՆՏՐԵԼՈՒ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Հարգելի՛ խմբագրություն, ես և ընկերուհիս սովորում ենք իններորդ դասարանում և ուզում ենք որոշ տեղեկություններ իմանալ մեր ընտրած ապագա մասնագիտությունների վերաբերյալ:

Ես ցանկանում եմ երկրաբան դառնալ, բայց չգիտեմ, թե ինչ գրքեր կարդամ, ինչպես նախապատրաստվեմ, որտեղ դիմեմ և ինչ քննություններ պետք է հանձնեմ: Իսկ ընկերուհիս ուզում է կինոռեժիսոր դառնալ և նույնպես տեղեկություններ չունի ընտրած մասնագիտության վերաբերյալ: Եթե հնարավոր է, խնդրում եմ, տաք մեզ հետաքրքրող հարցերի պատասխանը:

*Ա. ԱԼԱՎԵՐԴՅԱՆ*
*Եղեգնաձոր*



Նման բովանդակությամբ նամակներ հաճախ են գալիս խմբագրություն: Ընդառաջելով մեր ընթերցողների ցանկություններին, այս համարից սկսած, նյութեր կտպագրենք նամակում նշված և այլ մասնագիտությունների վերաբերյալ:



# ԵԹԵ ՈՒԶՈՒՄ ԵՍ ԵՐԿՐԱԲԱՆ ԴԱՌՆԱԼ



Դրա համար նախ և առաջ անհրաժեշտ է, որ դու քեզ ֆիզիկապես կոփես, որպեսզի կարողանաս լեռներում ու դաշտերում աշխատել, առանց դադարի երկար քայլել: Երկրաբանը պետք է սիրի բնությունը, պատանի հասակից սկսած ճանապարհորդի բնակավայրին մոտիկ լեռներում, քարատեսակների հավաքածուներ կազմի:

Երկրաբաններին մեծապես օգնում են գետերը, հանդիսանալով ոչ միայն հաճելի հանգստի վայրեր, այլև հանքավայրեր հայտնաբերելու դյուրին միջոց: Գետում եղած քարատեսակներից կարելի է իմանալ, թե ինչպիսի օգտա-

կար նյութեր են պարունակում այն լեռները, որոնց ստորոտով հոսում է գետը: Քարերի լեզուն հասկացող, իր գործի մեջ հմուտ երկրաբանը մի հայացքով կարող է նաև որոշել, թե երկրաբանական ինչպիսի կառուցվածք ունեն գետամոտ լեռները:

Երկրաբանական կարևորագույն խնդիրներից մեկը օգտակար հանածոներով հարուստ հանքավայրերի հայտնաբերումն է: Դրանք երկրի հարըստությունն են հանդիսանում և արդյունաբերության զարգացման կարևոր նախապայմանը: Առանց երկրաբանական գիտելիքների չի կարելի ճանապարհ, ջրանցք, թունել կամ ջրամբար կառուցել: Անգամ պատերազմական գործողությունների ժամանակ երկրաբանության իմացությունը խիստ կարևոր նշանակություն ունի:



Բացի մասնագիտական գրականությունից, կան պատանիների համար գրված բազմաթիվ գիտական և հանրամատչելի գրքեր, որոնք պատմում են, թե միլիոնավոր տարիներ առաջ լեռներն ինչպես են բարձրացել օվկիանոսի հատակից, ինչի հետևանք են երկրաշարժերն ու հրաբուխները, նաև թե ինչպես են ծնվում ու մեռնում լեռները: Այո՛, լեռները նույնպես «քարացած» ու անշարժ չեն: Հայաստանում, օրինակ, լեռները ամեն տարի բարձրանում են մեկ միլիմետրով: Բարձրանում են նաև Նորվեգիայի և Ֆինլանդիայի լեռները, իսկ մի շարք երկրներում դրանք դանդաղ կերպով իջնում են:

Այս և բազմաթիվ այլ տեղեկություններ կարելի է քաղել սովետական ականավոր գիտնական Ա. Ե. Ֆերսմանի «Հետաքրքրաշարժ միներոլոգիա», «Հետաքրքրաշարժ գեոքիմիա», «Քարերի հետքերով», Վ. Լըվովի «Ինչպես է ծնվել երկիրը», տողերիս հեղինակի «Ինչ են պատմում քարերը» գրքերից:

Այս ամենին ծանոթանալուց հետո արդեն դժվար չէ կողմնորոշվել, թե արդյո՞ք քեզ գրավում է երկրաբանությունը: Եթե իսկապես սիրում ես այդ մասնագիտությունը և ուզում ես հետեվողական կրթություն ստանալ, պետք է ընդունվես Երևանի պետական համալսարանի երկրաբանական ֆակուլտետը, որտեղ դիմորդները հետևյալ քննություններն են հանձնում. մաթեմատիկա (գրավոր և բանավոր), ֆիզիկա (բանավոր) և հայոց լեզու (շարադրություն): Ռուսական դպրոցների շրջանավարտները, եթե հայերեն չեն անցել, ռուսերեն են շարադրություն գրում, եթե անցել են, ապա հայերենից թելադրություն են գրում:

*ԹԱԴԵՎՈՍ ԹԱԴԵՎՈՍՅԱՆ*




# Օգնություն հեռախոսով

Հայնց Պեյերը հենց նոր էր ավարտել իր վեպի այն գլուխը, ուր տասնչորսամյա հերոսուհին՝ Իրենը դժվարին կացությունից անսպասելի ելք է գտնում: Իրենի վիճակը շատ ծանր էր, ինչպես այս խճճված ու անակնկալներով լի կյանքին դեռ չհարմարված շատ դեռահասներինը, որոնց առաջ մեկ էլ անսպասելի ծառանում են բազմաթիվ անլուծելի հարցեր: Ու՞մ հետ խորհրդակցել, ու՞մ հետ բաժանել մտքերը:

Իրենը զանգահարում է հեռախոսով և...

«Ես մի անգամ ևս վերընթերցեցի գրքիս այս հատվածը և մտածեցի. օգնության, խորհուրդների և մեծահասակների երբեմն անհեթեթ թվացող շատ հարցերի լրջորեն պատասխանող նման մի բյուրո պետք է ստեղծել մեզ մոտ՝ Շվեյցարիայում»,— պատմում է շվեյցարացի գրողը:

Հունվարի կեսերին, 84-ամյա Հայնց Պեյերը Բեռնի մերձակայքում գտնվող Անֆլինգեն գյուղում բաց արեց հեռախոսով տրվող օգնության



այդպիսի բյուրո: Ամբողջ օրը նրա բնակարանում չեն լռում հեռախոսազանգերը: Պեյերն առավոտյան ժամը 9-ից մինչև երեկոյան 10-ը հերթապահում է հեռախոսի մոտ: Երբեմն հեռախոսազանգերի թիվը անցնում է հարյուրից: Նրա բնակարանի հեռախոսի համարը գիտեն ոչ միայն Շվեյցարիայի, այլև Ֆրանսիայի ու ԳՖՀ-ի երեխաները:

«Իմ հաճախորդների մեծ մասը,— պատմում է Հայնց Պեյերը,— սովորաբար ցանկանում են անհայտ մնալ: Նրանք գանգատվում են, որ իրենց ծեծում են, կամ հայրն է հաճախ հարբած տուն գալիս, կամ ավագ քույրերն ու եղբայրներն են չարաշահում իրենց ուժը, պատահում է, որ ուսուցիչները կամ էլ համադասարանցիներն են ծեծում: Ինչպե՞ս օգնես, երբ չգիտես ո՛չ հասցեն, ո՛չ էլ նույնիսկ անունը: Բայց ես հավատում եմ, որ օգտակար գործ եմ անում և ձգտում եմ թեկուզ խոսքով օգնել»:

Հայնց Պեյերի մանկությունը շատ ավելի դժվար է եղել, քան նրա «հաճախորդներից» որևէ մեկինը: Երկու տարեկանում նրան որբանոց են հանձնել: 16 տարեկանում մի գյուղական տնտեսությունում աշխատանքի է նշանակվել: Հետո աշխատանքի է անցել կաթի ֆերմայում, եղել է տաքսու վարորդ, աշխատել ոչ մեծ ռեստորանում... «Չկա այնպիսի վիճակ, որի մեջ ես եղած չլինեմ, երեխաները չունեն այնպիսի պրոբլեմներ, որոնք ես ինքս մանկության ու պատանեկության տարիներին ունեցած ու լուծած չլինեմ: Ամենաասարսափելին ուրիշների անտարբերությունն է: Ինքս եմ կաշվիս վրա այդ զգացել: Եվ ես աշխատում եմ արդարացնել դեռահասի վստահությունը: Վստահելու դեպքում միայն նա անկեղծորեն կպատմի իր մասին, իրեն օգնելու հնարավորություն կընձեռնի»,— սեփական կենսափորձն ընդհանրացնելով, ասում է Պեյերը: Նա, հասկանալի է, անվճար է օգնություն ցույց տալիս, չնայած դա այնքան էլ էժան չի նստում նրա վրա: Ամեն ամիս

տոհպված է լինում հեռախոսի համար մուծել 800 մարկ:

Գրողի հաշիվներով, ինքն այդ աշխատանքը կկարողանա միայնակ կատարել մեկ տարուց ոչ ավելի, որից հետո այդ գործը իր վրա պետք է վերցնի պետությունը, եթե գնահատի դրա կարևորությունը: Իսկ Հայնցը կմշակի իր մոտ կուտակված ամբողջ նյութը և կվերածի յուրօրինակ հանրագիտարանային բառարանի: «Ես երազում եմ հեռախոսով ինձ տրված փոքրինչ հետաքրքիր հարցերը (դրանք մոտ 500-են) հրատարակել և տալ դրանց մանրամասն՝ պատասխանները, բերել իրավաբանական հիմնավորումներ, անել գործնական առաջարկներ: Եթե հաջողվի նման գիրք հրատարակել, ապա դա կլինի իմ ցույց տված օգնության շարունակությունը, բոլոր այն պատանի բարեկամներիս, ովքեր, որոնք հիմա դժվարին կացության մեջ են, իսկ գուցեև ինչ-որ բան կսովորեցնի նաև համար մեծահասակներին»:






Օրեգոն նահանգի Պորտլենդ քաղաքի (ԱՄՆ) կենդանաբանական այգու դիրեկտոր դոկտոր Օգիլվին որոշեց ոչ սովորական փորձ կատարել: Փորձի հիմնական սկզբունքը չափազանց պարզ էր. ուզում ես բերանդ քաղցրացնել, վաստակի՛ր:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Այցելուն դրամ է գցում վանդակի մոտ տեղադրված ավտոմատի մեջ, և վանդակում վառվում է լամպը: Կապիկը սրընթաց բարձրանում է վերև, ձգում է անջատիչը, և լամպը հանգչում է: Մյուս անկյունում անմիջապես վառվում է երկրորդ լամպը: Կապիկն այն էլ է հանգցնում և արժանանում ժետոնի, որը գցելով «բանանային» ավտոմատի մեջ, ստանում է բաղձալի քաղցրավենիքը:

Կենդանաբանական այգու մյուս բնակիչներն էլ են «քաղցրավենիք վաստակում»՝ չնայած այն կարող էին ստանալ նաև առանց աշխատանքի: Ընձուղտները, ծովառյուծները, փղերը, ջայլամներն ու ուղտերը նույնպես գերադասում են մեքենայացումը:

Փղերի համար ավելի բարդ հարմարանք էին օգտագործում, ծակ-ծակ թիթեղ, որի անցքերից որևէ մեկում (ամեն անգամ՝ տարբեր) լույս էր հայտնվում: Փղերը շուտ հասկացան, որ կերը հայտնվում է միայն այն դեպքում, երբ կնճիթով դիպչում են լուսավորված անցքին:

Օգիլվիի այն միտքը, որ կենդանաբանական այգու բնակիչները շնորհակալ են ցանկացած զբաղմունքի համար, փայլուն կերպով արդարացավ, երբ փչացավ գիբոնների վանդակի լուսային հարմարանքը: Չնայած լույսը չէր վառվում և կապիկները կեր էին ստանում ծառայողներից, նրանք, այնուամենայնիվ, րոպեն մեկ վեր էին մագլցում և բերկրանքով ձգում էին անջատիչը:

Լույս է տեսնում 1923 թվականից


# ՊԻՈՆԵՐ

9. 1979 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



*Շապիկի առաջին էջին՝ Ստ. Շահումյանի արձանի մոտ*

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 03198: Պատվեր 1572: Տպաքանակ 53300: Տպ. 3 մամ.:
Հանձնված է արտադրության 5/VII 1979 թ.:
Ստորագրված է տպագրության 4/IX 1979 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

# ԼՈՒՍԱԲԱՑ

Խոսք՝ ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆԻ — Երաժշտ.՝ ՏԻԳՐԱՆ ՄԱՆՍՈՒՐՅԱՆԻ

Հանդարտ, երգեցիկ

Coda

Լուսաբաց է, լուսաբաց,
Օդը ջինջ է, խոտը՝ թաց:
Օրը՝ զնգուն, ժպտերես,
Այս ինչե՞ր է բերել քեզ:

Կրկներգ.

Վե՛ր կաց, փոքրի՛կ, վե՛ր կաց, վե՛ր,
Տես ի՞նչ օր է, ի՞նչ արև...

Արի՛, ջո՛ւր առ այտերիդ,
Արի՛, ջո՛ւր առ աչքերիդ,
Եվ թող ժպիտդ ճյուղի
Երգին, երկրին ու լույսին:

Կրկներգ.

Վե՛ր կաց, փոքրի՛կ, վե՛ր կաց, վե՛ր,
Տես ի՞նչ օր է, ի՞նչ արև...



# ՊԱՀՊԱՆԵՆՔ ՄԵ՛Ր ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ

Այս նկարում դուք տեսնում եք Տեղերի վանքը: Գտնվում է Աշտարակի շրջանի Տեղեր գյուղում: Կառուցվել է 13-րդ դարում, Աղբայրիկ ճարտարապետի կողմից և պատմական մեծ արժեք է ներկայացնում: Նրանք, ովքեր վանքի կառուցումից 7 դար անց, նրա պատերին գրել են իրենց անունները՝ Պարգև, Վասյա, Օնիկ, Համլետ և այլն, հիմարաբար ցանկացել են անմահ կոթողի հետ անմահացնել իրենց՝ աղտոտելով վանքի պատերը: Ամոթ այդ Պարգևին, Վասյային, Օնիկին ու Համլետին և նրանց նման վարվողներին: Մեր ճարտարապետական հուշարձանները համաժողովրդական հարստություն են, իրավամբ համարվում են մեր ժողովրդի դարավոր ազնվության վկայականներ, և հանցանք է եղծել այդ վկայականները:

Գին՝ 15 կ. Ինդեքս 77806